588

ՅՈՎՀԱՆ ՎԱՐԴԱՊԵՏ

Hovhannes Vanandetsi

# ՔԱՐՈԶՉԱԿԱՆ

Varozchakan 142 p.

# ԹՈԹՈՎԱՆՔՆԵՐ



Բ.

ԱՂԵՔՍԱՆԴՐԱՊՕԼ
ՏՊԱՐԱՆ ՅԱԿՈՎԲ ՂԱՍԱՐԵԱՆՑԻ
1903

# ՑԱՆԿ





*Ըստ բարձու հրամանի Նորին Ս. Օծութեան Վեհափառ Հայրապետի ազգիս, Դիւանս թոյլատրէ տպագրութիւն քարոզագրոյս, հաստատելով ստորագրութեամբ եւ դրոշմամբ կնքոյ Հայրապետական Դիւանի: ի 12 դեկտեմբերի 1902 ամի ի Ք. Տփխիս թ. 1791.*

**Դիւանապետ՝ ԿՈՐԻՒՆ ՎԱՐԴԱՊԵՏ**

Առ դէտս մեծի Քարոզչի Հայաստանեայց առաքելական եկեղեցւոյ՝ ՀԱՅՐԻԿԻՆ ՀԱՅՈՑ:

## ՀԱՅՐԻԿԴ ՀԱՅՈՑ

*Քարոզչական թոթովանքներու Բ. գրքոյկն առ ոտս Քո արկանեմ: Հայոց գեղերում ցանքի ժամանակ բարեպաշտ գիւղացիք իրենց սերմից մի մի բուռ կ'բերեն տէր հայր քահանային որ օրհնէ. ապա օրհնեալ սերմը կ'տանեն երկիւղածութեամբ կ'խառնեն ամբողջի հետ և յոյս-հաւատով կ'ցանեն հերկերուն մէջ: Ես էլ իմ գրքոյկս կ'բերեմ, որ Օրհնես Մեծ Քարոզիչ, Օրհնէս իմ թոթով լեզուն, որ կապանքներն արձակուին. թերևս շահաւէտ լինիմ այն նուիրական եկեղեցուն, որի պայծառութեան համար* 50 *տարի հնչել է Քո հզօր ձայնը:*

*Չեմ աղերսում որ Սրբազնագոյն Հայրապետդ Օրհնէ զիս, որ պաշտօնէութեան ասպարիզի վերայ յառաջ գնամ, տիտղոսներով ճոխանամ, կ'աղերսեմ միայն որ Մեծ Քարոզիչդ Օրհնէ զիս, որպէս զի «Բանիս վարդապետութեան ծիլը աճի ծառ դառնայ ինձնում. կաղերսեմ որ քարոզչական շնորհացդ կրակէն մի կայծ մօտեցնես շրթունքներիս և հրով սրբես զայնս: Պաշտօնն, աստիճանն ու իշխանութիւնը վաղ-*

588

*ԲԵՆԻԿ ՎԱՐԴԱՊԵՏ*

Hovhannes Vanandetsi

# ՔԱՐՈԶՉԱԿԱՆ

142 p.

# ԹՈԹՈՎԱՆՔՆԵՐ



Բ.

ԱՂԷՔՍԱՆԴՐԱՊՕԼ
ՏՊԱՐԱՆ ՅԱԿՈՎԲ ՂԱՍԱԲԵԱՆՑԻ
1903

# ՑԱՆԿ





Ըստ բարձու հրամանի Նորին Ս. Օծութեան Վեհափառ Հայրապետի ազգիս, Դիւանս թոյլատրէ տպագրութիւն քարոզագրոյս, հաստատելով ստորագրութեամբ եւ դրոշմամբ կնքոյ Հայրապետական Դիւանի: ի 12 դեկտեմբերի 1902 ամի ի Ք. Տփխիս Թ. 1791.

Դիւանապետ՝ ԿՈՐԻՒՆ ՎԱՐԴԱՊԵՏ

Առ քեզ Մեծի Քարոզչի Հայաստանեայց առաքելական եկեղեցւոյ՝ ՀԱՅՐԻԿԻՆ ՀԱՅՈՑ:

## ՀԱՅՐԻԿԴ ՀԱՅՈՑ

Քարոզչական թոթովանքներուս Բ. գրքոյկն առ ոտս Քո արկանեմ։ Հայոց գեղերում ցանքի ժամանակ բարեպաշտ գիւղացիք իրենց սերմից մի մի բուռ կ՚բերեն առ հայր քահանան որ օրհնէ. ապա օրհնեալ սերմը կ՚տանեն երկիւղածութեամբ կ՚խառնեն ամբողջի հետ և յոյս-հաւատով կ՚ցանեն հերկերուն մէջ։ Ես էլ իմ գրքոյկս կ՚բերեմ, որ Օրհնես Մեծ Քարոզիչ, Օրհնէ՛ս իմ թոթով լեզուն, որ կապանքներն արձակուին. թերևս շահաւէտ լինիմ այն նուիրական եկեղեցուն, որի պաշտօնութեան համար 50 տարի հնչել է Քո հզօր ձայնը։

Չեմ ակնկալում որ Սրբազնագոյն Հայրապետդ Օրհնէ զիս, որ պաշտօնէութեան ասպարիզի վերայ յառաջ գնամ, տիտղոսներով ճոխանամ, կ՚աղերսեմ միայն որ Մեծ Քարոզիչդ Օրհնէ զիս, որպէս զի «Բանիս վարդապետութեան ծիլը աճի ծառ դառնայ ինձնում. կաղերսեմ որ քարոզչական շնորհացդ կրակէն մի կայծ մտցնես շրթունքներիս և հրով սրբես զայնս։ Պաշտօնն, աստիճանն ու իշխանութիւնը վաղ-

Բ

անցուկ են, կանցնին. անցողականի ցանկացող չեմ. բայց առաքելական շնորհալի խօսքն ու քարոզը երբէք չեն անցնի. և Դու անանց ես, Հայրիկդ Հայոց, քանի Քո քարոզներուդ, գաղափարներուդ գզօրդն արձագանքներով պիտի կրկնուի սերունդէ սերունդ, մինչ երկրիս վերայ Հայ կայ և հայկական աղօթից մրմունջ: Գաղափարը. ճշմարիտ խօսքը չի մեռնիր և յաւիտենական է. «Իսկզբանէ էր Բանն և Բանն էր առ Աստուած և Աստուած էր Բանն»:

«Բանիս հրաշունչ վարդապետ, ընդունէ իմ գրքոյկ, Օրհնէ իմ խօսք ու ույժ տուր և Քո սիրած սրբազան գործին ծառայէ: Երբ շնորհներ ու օրհնութիւններ բաժնելու լինիս հայկեր գաւառներուդ, խնդրածս միայն քարոզչական մաշկեակդ պիտի լինի Եղիշէի օրինակով:

Մեծի Վարդապետիդ
անձնախոնարհ ծառայ
Բենիկ վարդապետ.

## Ա.

## ՅԻՍՈՒՍԻ ՎԵՐՋԻՆ ՕՐԵՐԸ

կամ

## ՅՈՒԴԱ, ՊԻՂԱՏՈՍ, ԱՄԲՈԽ

Ինչպէս երկնքի մաքուր ցօղ վարդեան նորածիլ ծաղիկների գրկում, ինչպէս բարկ ամռան զովարար անձրև ցամքած, չորցած, պատառատու-տուն դաշտերի վրայ, ինչպէս լեռնային անուշիկ զեփիւռ տենդոտ մարդու այրուող երեսին, այնպէս զովարար, ախորժիչ է չնաշխարհիկ վարդապետի վերջին օրերի նկարագիրը, աշխարհային կենաց վերջին շրջանի պատկերը ճշմարիտ քրիստոնէի համար։

Քրիստոսի խաչազարդ դրօշակի զինուորներ, ինձ անկեղծ եղբայրներ, թօթափեցէք մի վայրկեան ձեզ աշխարհի հետ կապող գերիչ շղթաները, ազատութեան թևեր առէք, թռչենք դէպի ս. Աւետարանի աշխարհը, մտքի աչքով տեսնենք Փրկչի սուրբ երեսը, սուրբ գործը իւր կենաց վերջին օրերում. ինչ տխուր, բայց և ինչ մխիթարիչ, ոգևորող, հոգեպարար կեանք։

Դու՛ իմ սիրտս պէտք է լուանաս». «Ո՜հ, Պետ-րոս, խոնարհութեան մէկ օրինակ եմ տալիս ձեզ և մեծէ չթողնես, որ սուրբ լուանամ, ինձ հետ բաժին չունիս». և լուաց.

Սեղանի ծայրին սև երեսով, մռայլ հայեաց-քով գլխիկոր նստած է դաւաճան` առաքեալը. լապտերի լոյսը ընկնում է նորա երեսին. Նա այդ րոպէից թաքցնելու համար իւր հոգին մատ-նող դէմքը, գլխիկոր վար կ'նայի։ Փրկիչը մօ-տեցաւ. լուանում է և նորա ոտքը։ Նոյն րո-պէին սատանան դաւաճանի խորամանկուած սրտի անկիւններից շշնջում է նորան «մատնիր, մատնիր դորան, երեսուն արծաթը գերադասիր խոնարհ վարդապետից»։ «Եւ ի լինել ընթրեա-ցըն սատանայի իսկ արկեալ էր ի սիրտ նորա, զի մատնեսցէ զնա»։

Վերջացաւ ոտնալուացն. Նա սեղան նստաւ, վշտերի մի քղոնիք վրան կոխեց «խռովեցաւ յոգի իւր» և ասաց «ճշմարիտ եմ ասում, որ ձեզնից մէկն ինձ մատնելու է»։ Սիրող առա-քեալները սոսկացին, բայց սատանան շշնջում է դաւաճանին «չ՛շփոթուիս, համառ եղիր, մատնիր շուտով, արծաթ կեր». «Ո՜հ, ձայնեց Յիսուս, ինձ հետ հաց ուտողը խաբէութեան է գործում իմ դէմ». իսկ սատանան՝ Յուդային. Սիրտ առ, պինդ կաց դաւաճան, միայն սր-

ծախեն է տնհման»։ Փրկիչն այս ճանապարհով կամենում է հեռացնել մերկացնելով չարաչար-ծին գաղձանի սերերը նորան. Նորից խօսում է «Որին թաթախած պատառս կ'տամ, նա կ'մատնէ Ինձ» և տալիս է Յուդային. «Դու չ'զղջաս» շշնջում է թշնամին։ Վերջապէս Փրկիչն անուղղակի տարբերելին գամանալով ասում է. «Վեր կաց, արա ինչոր կամենում ես», ընդ այս ան-դիջ». «Վեր կաց համարձակ», շշնջում է չար-դեր, մօտ է երեսուն արծաթ»։

Ուրբաթ գիշերուայ մթութեան մէջ չար ոգին առաջնորդում էր Յուդային դէպի քահանայապետի տուն երեսուն արծաթը կշռելու, այն ժամանակ երբ Յիսուս իւր վերջին կտակն էր աւանդում իւր աշակերտներին, իւր հրաժեշտի կտակը. «Որդեակք իմ, սիրեցէք միմեանց այնպէս, ինչպէս ես ձեզ սիրեցի. Թող չվշտանան ձեր սրտերը, այլ Ինձ հաւատացէք, Աստուծուն հաւատացէք։ Եթէ աշխարհը Ձեզ ատէ և հալածէ, իմացէք որ առաջ Ինձ ատեց և հալածեց, նշանակութիւն մի տաք անմիտ ամբոխի հալածանքին։ «Մեծ ես քան զայս սէր ոչ ոք ունի, եթէ զանձն իւր դիցէ ի վերայ բարեկամաց իւրոց......»։

Գիշեր էր երբ Նա քաղաքից դուրս եկաւ և Կեդրոնի ձորակի ճանապարհը բռնեց. աշա-

հան զդա, խաչիր զդա և արձակիր մեզ բան-դից մարդասպան, աւազակ Բարաբբային։ Իսկ հեզ Փրկիչը՝ ոչ ձայն ոչ ծպտուն։ Վերջացաւ քննութիւնը. Ելաւ պատուհար, ջուր ուզեց, ձեռքերը լուաց Հրեաների առաջ և առաց «քաւեալ եմ ես այս արդարի արիւնից, որին վերայ ես մի յանցանք չգտայ»։ «Ա՜հ, եթէ դու զդա չխաչես, մեզ՝ քեզ կայսրը կ՚մատնենք», աղաղակեց ամբոխը. և դատաւորը իւր պաշտօնից զրկուելու երկիւղից անմեղին կատաղի ամբոխի ձեռքը տուեց որ տանեն ու խաչ հանեն։

Մատնիչ գանձապահը Իսկարիովտացի Յուդան էր, դատաւոր՝ Պիղատոս։

Երեք անուն՝ Յուդա, Պիղատոս, խաչահան ամբոխ իրենց հաւասար նշաւակութեան, անարգանքի անուն չունին. զոցանից որն է աւելի անզգամելի, որն է առաւել զզուանք յարուցանող, ես չգիտեմ. միայն գիտեմ երեքն էլ հաւասար չարագործ են։ Յուդան մատնեց, ամբոխը չարչարեց, Պիղատոսը նորա անմեղութիւնը խոստովանելով դատապարտեց. Յուդան իւր վարդապետին երեսուն արծաթի փոխանակեց, Պիղատոսն իւր խիղճը պաշտօնին զոհեց, ամբոխը Փրկչին խաչեց աւազակ Բարաբբային ազատեց։ Յուդայի համբոյր, Պիղատոսի դա-

տաստան, ամբոխի սուտ վկայութիւն Փրկչին խաչի վերայ բեւեռեցին։

Բայց ով յաղթանակեց. Թողնենք այդ մինչև որ անպարտ դաշնակիցներին (Յուդա, Պիղատոս, ամբոխ) և արդարութեան մարտի դաշտէն երկնից հրեշտակ համբաւ բերէ՝ Հողն անմեղին չպահեց իւր ծոց, Քրիստոս Յարեաւ ի մեռելոց *)։

---

*) Ծանօթ. Խօսուած է Օդեսայի Ս. Լուսաւորիչ եկեղեցում 1897 թ. Աւագ Հինգշաբթի գիշերը։

## Բ.

## ԻՄ ԱՂՕԹՔԸ

Ղազարէ, արի եկ արտաքս (Յով. ժա, 43).

Դու, հրաշագործ ձայն, որ հնչեցիր Ղազարոսի գերեզմանական այրի կամարների տակ, հազար չորեքօրեայ մեռեալին ու մեռածին դէպի կեանքը կոչեցիր, Դու խօսիր և այժմ մեր սրտերում, ուր նոյն Ղազարոսի գերեզմանի խաւարն ու մամուռն է տիրում։ Փրկարար ձայն, երկու հազար տարի է տօնում ենք քեզ, երկու հազար տարի է, որ բարոյապէս մեռեալ աշխարհը վերակենդանութեան կոչեցիր ու անցար. Քո արձագանքդ դեռ կայ. Նա պայծառ բաղխում է մեր կուրծք, ուր մի մի դիակնացած մեռեալ սիրտ է պառկած, բայց Նա կարծես անզօր է դարձել չորեքօրեայն կենդանացնելու։

Ղազարոսի կենդանութեան դէպքը, Փրկիչ, Քո հաւատի ու արցունքի էր, Մարիամի ու Մարթայի արցունքի ու հաւատի էր. Նրքա քո անհեղ զօրութեանդ հաւատում էին. «Տէր, եթէ այստեղ եղած լինէիր, մեր եղբայրը չէր

մեռնի» և արցունք էին ցօղում նրա ամպոտ աչքերը։ Դու խնդրել էլ սիրոյ արտասուքով թացիր Ղազարոսի գերեզմանը, ուր ջերմ հաւատով աղօթեցիր. «Հայր, գոհանամ զքէն զի լուար ինձ և ես գիտէի զի յամենայն ժամ լսես ինձ»։ Այդ արտասուքից, այդ հաւատից Ղազարոսին կենդանութիւն ծլեցաւ։

Սակայն ուր է Մարիամի և Մարթայի արցունքն ու հաւատ. մեր լուսաւորեալ օրերում չկան նոքա. կանք մենք միայն, մեռեալ ու չորեքօրեայ Ղազարոսներս, բայց՝ արցունք մեր սխալների. համար, հաւատ մեր բարոյական վերակենդանութեան համար ծաղրելի բաներ են դարձել։ Ապաշխարութեան ձևը պահում ենք, բայց կղզման արտասուքի փոխարէն մեր աչքերի մէջ արծաթի փայլն է խաղում, կենագործող հաւատի տեղ մեր կրծքերում անտարբերութեան սառցէ սարն է կանգնած։

Դու եկար ցրուած Իսրայէլի զաւակներին ժողովելու, գօսացածին ձեռք, բորոտին սըրբումն, անդամալոյծին առողջութիւն, դիւահարին բժշկութիւն, անյոյսին յոյս տալու, անհաւատին հաւատ ներշնչելու. Նայինի միամօր որդու յարութեամբ մի սևաւոր մօր արցունքը սրբելու, Ղազարոսի վերակենդանութեամբ ճշմարիտ հաւատի ուժը հաստատելու, եղբայրա-

կորոյս Մարիամին ու Մարթային մխիթարելու։ Իսկ մենք Քո անունն այստեղ կաղդայոցներու ինչ արինք նոր Իսրայէլի՝ մեր արենակից եղբարց համար. մինչ Քո տուածը դառն չէր։ Մի կողմից կեանքի փոթորիկ, միւս կողմից բարոյական մեռելութեան հողմը քանդեցին Քո ժողովրդէդ բոյները ու տարագիր եղան նոքա. աշնան ծառերի տերեւի նման թօթափեցան ու ցրուեցան օտար աշխարհ, Քո որբնակովդ մեզ մօտ եկածներին ժողովեցինք։. Մէկի զաւակ, միւսի ամուսին, երրորդի հայրը, չորրորդի քոյրը, հինգերորդի եղբայրն ու որբերին Քո անուանդ համար ազգային տաճարի ու. սեղանի վերայ դրին իրենց արիւնոտ գլուխները. մէն մէնակ մնալով դօսացած ձեռք, անդամազուրկ անդամալոյծ դարձան, Քո պատուէրիդ համաձայն մեր ձեռքերը ծառայեցին նոցա։

Այս հարցերի պատասխանը մեզ համար Քո անսուտ աւետարանից, միշտ թարմ, միշտ վճիտ աղբիւրումն է. ցուցամոլ փարիսեցու առատաձեռնութիւնը, անիրաւ դատաւորի դատաստան, աղքատիկ Ղազարոսի և մեծատան առակը մեզ, մեզ կ՚վերաբերի։ Մենք մի քանի արծաթ տուինք կծծուած դէմքերով, որ բարեգործի անուն ժառանգենք, միքանի մեկ-

նած ձեռքերում դրամ դրինք, որ անճար քո-ղոքաւորի համն չ'ձանձրացնենք մեզ «Դատ արա ինձ» ասելով. և միթէ մեր ճոխ սեղաններից մի բան պակսեց, որ աղքատիկ Ղազարոս եղ-բայրները յագենային։

Եւ փոխարէնը, Ողորմած Փրկիչ; այսօր Քո տաճարիդ մէջ Քո աղքատիկ եղբայրներիցդ երկու անմեղ մանուկ բողոքում են Քեզ, բո-ղոքում են մեր սուտ ապաշխարութեան դէմ։ Ի՞նչու էր պառկելով այստեղ էին ապաւինել նո-րա. մի կուրծք կար, որ այդ մանկանց ջեր-մութիւն էր տալիս. այս քարոյակէն ցուրտ երկրում. մենք ամէնքս այդ կրծքի մէջ վառ կրակը հանգցրինք. միշտ, տառապանք, քաղց, ծարաւ, մերկութիւն վերջ դրին մեր երիտա-սարդ մօր կեանքին մեզ մօտ; մեր աչքի առաջ. Ո՜հ, հարուստ մեռեալի պալատի վերայ դէզդէզ թափուող պսակներից մէկի ծախքը հերիք էր որ մի հայ մօր ճրագը վառ մնար. և ո՞ւր հանգաւ; օտար երկնքի տակ, հեռու հայրենի հողից, սիրելեաց գերեզմաններից...... Եւ ինչ զանազանութիւն կայ թշուառ մօր և մի այլ մօր մէջ. միայն այն որ առաջինն աղ-քատ է, երկրորդը հարուստ։ Անիրաւ արծաթ, որ փակում ես բաղդաւորի աչքը իւր անբաղդ քրոջ տառապանքը ծածկելու համար։

Բայց կարելի՞ է պատկերացնել այն բոլոր թշուառութիւնը, որ հեղեղեց Քո ժողովրդին ո՜վ Տէր. Քո մարմնաւոր հայրենիքդ՝ Իսրայէլի աշխարհն այնքան քար չունի, որքան մեր երկիրն աւերակ ունի, հայրենիքիդ գետերն այնքան ջուր չունէին, որչափ Քո Նազարեան այս երկրպագու ազգը թափուած անմեղ արիւն ունի, Սինայի անապատն այնքան աւազ չունի, որքան այս ազգը նահատակաց գերեզման ունի, Հրէաստանի երկինքն այնքան անձրև չունի, որքան այս աշխարհն արցունք ունի. աւերակների աշխարհ է մեր աշխարհ։ Երկրաւոր կեանքիդ մեծախորհուրդ չարչարն է սկսուում. դեռ Գողգոթայ չ՚բարձրացած, նայիր ու տես այս աշխարհ. Դու, ժողովոյ Փրկիչ, ցրուած մի թողուր քո հօտը. Դու՝ յարուցանող ձայն և մեզ, կանչիր մեռելութիւնից ի կեանս «Ղազարէ արի եկ արտաքս»։

Գիտեմ, աւերակները կ՚շինուին, տաճարները կ՚կանգնին, մեռեալները յարութիւն կառնեն, եթէ միայն մեր աւերակ սրտերը վերականգնես, Ո՜վ Տէր, եթէ բանաս մեր աչք ու տեսնենք մեր սեփական թշուառութիւնը, եթէ օտարաց կեանքով շլանալուց դարձնես մեզ, որ մեր կեանքովն ապրենք։

Այսօր քո ողորմութեանդ դուռը բանալ

պիտի խնդրէ Հայոց եկեղեցին ընդունիր մեր աղերսը «բաց մեզ, Տէր, բաց մեզ զդուռն ողորմութեան որ ողբալով կարդամք առ քեզ». Քո չարչարանաց օրերու շնորհիւ և «Տուր զօրութիւն ծառայի քո, կեցո զորդի աղախնոյ քո և արա առիս նշան բարութեան». Թերևս Քո խորհրդաւոր կեանքիդ ժամերը, Քո հառաչանքդ միանայ ծառայիդ ակար ձայնին հետ և բարութեան նշան տեսնուի այսուհետև քո ժողովրդիդ մէջ: Ամէն *):

---

*) Ծանօթ. Խօսուած է Օդեսայի Ս. Լուսաւորիչ եկեղեցւոյ 1897 Թուի Ծաղկազարդին:

## Գ.

## ՀԱՒԱՏՆ Է ՓՐԿՈՒՄ

„Տէր յաւել մեզ հաւատս“.

Գեննեսարէթի ծովակը կատաղի բարկութեամբ կ'լայնանայ, կ'խորանայ ու իւր ոյժերն անդունդներից հաւաքելով փրփուրի լեռներ կ'հանէ իւր դէմքի վերայ. այդ ալիքներից մահ կ'հոտի։ Մէկ ալիքների կատարը բարձրանալով մէկ նոցա խոր գիրկն անյայտանալով կ'օրօրուի տաշեղի նման մի խղճուկ նաւակ։ Մահու տագնապը նման ալիքով կ'բաղխէ և ներքուստ խղճուկ թիավարների կուրծքը։ Նոցա բազուկները թուլցան, անխուսափելի է մահը։ Յուսակտուր աչքերով նոքա կ'նայեն նաւակի ծայրումը խաղաղ քնած մարդու վերայ ու կ'մտածեն պաւն զղջմամբ. «Ո՜հ, յաւիտենական կեանք էիր խոստանում մեզ. ինչպէ՞ս խաբուեցանք, մինչդեռ էլի մի վայրկեան և ձկների աշխարհում կ'բացուի մեր գերեզման։

Քնած է Նա. Նա էլ է յոգնած, ալիքներով ծեծուած, բայց ոչ ծովի, այլ մարդկանց ատելութեան փրփրալից ալիքներով ծեծուած

և այժմ հանգչում է անոյշ քուն մտած։ Վերահաս մահից սարսափած ձայն էր տալիս Նորան. «Վարդապե՛տ, ոչի՞նչ է քեզ փոյթ, կորնչիմք ահաւասիկ»։ Զարթեց, հրեշտակի հանդարտութեամբ վերկացաւ, ձեռքը դէպի հողմերին ու ալիքը մեկնեց ու հրամայեց նոցա. «Դադարեա՛, կարկեաց. և դադարեաց հողմն և եղև խաղաղութիւն մեծ». և դառնալով իւր ապշած աշակերտներին քաղցրութեամբ յանդիմանեց. «Ընդէ՞ր այդպէս վատասիրտք էք, չէ ևս ունիք հաւատս»։

Նաւակն ափին իջաւ. մտախոհ յառաջ կերթայ Յայրոս իշխանի հաւատը պսակելու, նորա մերձ ի մահ դուստրը բժշկելու։ Ժողովուրդը շարիշար կերթայ նորա ետևից։ Ամբոխը ճեղքելով մէկ կին, 12 տարի հիւանդութեամբ տանջուող մէկ կին, յոյսերի արցունքներով ցօղուած, հաւատի ժպիտն երեսին յառաջ կերթայ. «Ա՜խ, երբ կ'հասնեմ Նորան, երբ կ'մերձենամ Նորա հանդերձին. ինչպէս անեմ, որ ինքը չ'իմանայ»։ Հասաւ. դողդող շրթունքներն հպան Նորա վերարկուի քղանցներին։ Գաղտնիքների աշխարհները տեսնող Փրկիչը թափանցեց Նորա սիրտը, տեսաւ որ այնտեղ հաւատի խարոյկը կ'բորբոքուի, հրդեհ կ'բոցավառուի. ա՛հ դուստր իմ, «Հաւատք քո կեցուցին զքեզ, երթ ի խաղաղութիւն և եղիջիր ողջ ի

տանջանաց քաց» և քաղցր հայեացքից զովա-րար մի ցօղ իջաւ թշուառ կնոջ վերայ ու փրկեց նորան կործանեցուցիչ հիւանդութիւնից։

Ի՛մ ունկնդիրներ, եթէ ձեր շքեղ դարդերի մէջ Փրկչի Աւետարանն էլ տեղ ունենար ձեր սեղանների վերայ, ես ամենայն կ՚առաջարկէի գնալ բանալ այն գիրք և անմահութեան հոտ բուրող հաւատոյ հազարերանգ ծաղիկների դաշ-տը տեսնել հոգու աչքերով։ Այլ աւա՜ղ, ինչ-պէս ցաւագար աչքի համար արևի ճառագայթն անդուր է, խայթող, ծակող է, այնպէս էլ ցա-ւագար հոգին չի կարող տանել հաւատի լոյսը. ուստի Աւետարան, հաւատ վարուց թև առել թռել են մեր սրտերից, այնտեղ դատարկու-թիւն ու անհաւատութիւն թողնելով միայն։

Քրիստոսի անունով դրոշմուած Քրիստո-նեաներ, Աւետարանի հոգը հաւատն է, փրկու-թեան զէնքը հաւատն է, երկրի ու երկնքի դրախտը տանող ճանապարհը հաւատն է, հզօր-ներից հզօրագոյնը հաւատն է։

Բայց ինչ է հաւատ։ Մտածելու շնորհքէն զուրկ մարդու համար դա մի վերացական ան-հասկանալի բան է, սակայն արտաքին բնու-թիւն և իւր հոգեկան աշխարհն ուսումնասի-րող մարդու համար հաւատը նոյնքան պարզ, նոյնքան հասկանալի է, որքան արևի ճառա-

դայթն երկնակամարի բարձունքում բաց աչքի համար։ Հաւատը մի ներքին անքննելի համոզմունք է թէ կայ մի Աստուած, որի ձեռքումն է մարդկանց բաղդը, որ օրէնքներ ունի և նոցանով կառավարում է ազգեր ու ժողովուրդներ. Նորա օրէնքներն անփոփոխ ու յաւիտենական են, նոցա առաջ բաց սրտերը վարձատրում են միշտ, նոցա համար փակ սրտերը պատուհասւում են։ Մենք Աստուծուն այդ օրէնքներից գիտենք։ Ո՞վ ստեղծեց տիեզերքը, ով հրաման տուաւ երկնից լուսաւորներուն մշտական հերթով զօր ու գիշեր լուսաւորել, ով բաժանեց գիշերը ցերեկից, աշխատանքի ժամերը հանգստութեան ժամերից, ով տարուայ հրաշալի յաջորդական անխախտ եղանակները սահմանեց, ստեղծեց կենդանական թագաւորութիւնը ապրելու զգալու համար և բուսականը՝ վայելելու համար. ով սահմանեց կեանքն ու մահը։ Բայց մտնենք մարդու հոգեկան աշխարհը. ով դրեց մարդու կրծքի մէջ արդարութեան, փոխադարձ սիրոյ, կատարելութեան, յուսոյ և նման գաղափարները. ով պահապան դրեց մարդկանց գործերի վերայ խղճի հզօր ձայնը։ Մարդի՞կ. բայց մարդկանց խղճուկ խելքով կազմուած օրէնքները փոփոխական են, կարճատև են, այլ չե՛ն յաւիտենական արդարու-

թեան, սիրոյ օրէնքները. չէ՞ յաւիտենական մարդկային խիղճը. չէ՞ յաւիտենական սիրոյ զգացմունքը: Թերահաւատները գուցէ կասեն թէ «պատահմունք՛մէ այդ». բայց միթէ պատահմունքի մէջ որոշ խելացի կարգ կարող է լինել. պատահմունքը օրէնք չունի: Նարահաւատները էլ գուցէ կասեն թէ «բնութեան ոյժն է, որ յառաջ է բերել այդ ամէնը». Աստուծուն «բնութեան ոյժ» անունը տալով խղճուկ գլուխները կ՚կարծեն թէ աւելի համոզական բան ասացին քան ինչ որ ս. Աւետարանի մէջն է ասուած. այդ ինչ ոյժ է որ յաւիտենական իմաստութեամբ լի է. ինչ ոյժ է, որ բարձրագոյն ու անօրինակ գիտակցութեամբ կ՚գործէ: Դա նոյն Աստուածն է, որի առջև ծունկ կ՚իջնի ճշմարիտ քրիստոնեան, դէպի որը բազկատարած կողկողչուն ձեռքերով, յուսալից աչքերով կ՚աղօթէ ջերմութեամբ Աւետարանի ճշմարիտ աշակերտը: Կանգնեցէք ձորակի ծաղկունքը մաքուր ցօղով ոռոգող առուակի ափին, զմայլեցէք ձեր կուրծքը նորա պաղ ջրով. դուք նորա սկիզբը չէք տեսնում. բայց կարող էք ուրանալ թէ նա հեռուները լերան լանջին ակն ունի, այն ակն է որ աղբիւր է ժայթում: Այդպէս էլ արտաքին աշխարհը և մեր հոգեկան աշխարհի հանրամարդկային յաւիտենական

զգացմունքները շօշափելով ու տեսնելով ամէն օր, ամէն ժամ, ամէն վայրկեան, կարող ենք ուրանալ թէ այդ ամէնը հեղինակ ունի, բղխում ակն ունի, եթէ յիրաւի մենք աչք, սիրտ և խելք ունինք։

Այսպէս անտարատ, բնական մարդու համար հաւատից աւելի հաւաստեալ բան չկայ։ Հաւատի զգացմունքը խտրութիւն չգիտէ. նա պարունակում է ամէնքի կուրծքը՝ աղքատի և հարուստի, անգէտի և ճշմարիտ գիտունի, գիւղացու և քաղաքացու, մանկան և ծերի։ Դա ամէնքի մատչելի գանձն է, իսկ արենակից-ներին միմեանց հետ կապող ոսկէ օղն է։

Եղել էք դուք երբեւիցէ գիւղացու արտում. տեսել էք դուք պատուական գիւղացուն մանգաղով հնձելիս իւր ցորենը։ Նա հնձում, խուռ-խուռ դիզում է հնձածը։ Երբեմն յանկարծ բարձրանում է հողմ, ցրում է, փնջերն արտի երեսով. հնձուորը վազում ընկնում է, նոցա ետեւից և ի մի հաւաքելով կեմի (խոտից ոլորած պարան) վերայ դնում խուրձ է կապում։ Այնուհետեւ թող որքան ուզէ քամին պլորէ խուրձը, նորա հասկերն ամրացած են կեմով, ոչ մէկը չի կորչի։

Հայ եղբայրներ, բաժան բաժան հայու միութեան կապը հայու հաւատն է. դարաւոր

ժամանակներից ի վեր կեանքի չարադուշակ հողմերուն առջեւ կոյսերց փշեցին ու պղտորեցաւ հայկական խուրձը. սակայն նորա հասկերը չկորան։ Բայց եկան օրեր (մէխ անողորմ կոր-չէին նորա) երբ անմիտ հայը կորել կամեցաւ այդ կապող օրը. հայու հաւատը, որ լուսաւորչեան ձեռքով էր ոլորուած, և հողմերը փե-չակեր հաւքերու պէս առան պղտորեցին ու տարան հայոց քակուած խուրձի հասկերը և անխարտ հայը դիմակցածի պէս գլխու չի ըմբռնում թէ իւր ցիրը, իւր կորուստը, իւր քաղաքական ու ծիսական անկումը կրոնի, հաւատի կապն արհամարհելու մէջն է։ Աչքերնիդ դարձուցէք ոլէօք. Վան և այլ գաւառներ ու տեսէք թէ ինչպէս ազգային հաւատի անտարբերութեան հասած հայն իւր ամբողջական կապը կորելով ոսկով կ՚ծախէ, ու հայութեան մնաս բարով կասէ։ Գուցէ կասէք «քաղցն է որ կ՚ստիպէ». բայց դա չէ արդարացնում. առաքինի ժողովրդի համար հաւատը զօրեղ է քաղցից, զօրեղ մահու տագնապից։ Դառն է այս ճշմարտութիւն և աւաղել դառն, երբ այսօր Վարդանանց նահատակաց յիշատակին կ՚այօթենք, երբ «Հաւատոյ զինուր վառեալ Մամիկոնեան զօրավարին» կ՚տօնենք։ Աւարայրի արեամբ ցօղուած ու ամրացած հայու հաւատի կապը կ՚արհամարհենք։

Ճանճերի մէկը մաքուր օդի մէջ կ՚լողար, կ՚կայտռէր. մէկէն ի մէկ խելքին փչեց հեռանալը. «Վ՜հ, ձանձրացայ այս օդի մէջ ազատ շրջելէն, գնամ այս մօտակայ տանը մտնեմ» և մտաւ մի կիսաքանդ, մթին անկիւն, ուր սարդը պատի անկիւնում իւր ոստայնն էր հիւսում։ Մտնելու անմիտը և իւր թևերով կպաւ ոստայնին։ «Օ՜ֆ, ի՜նչ փափուկ անկողին է սա, այստեղ պառկիմ, այս է իմ հանգիստս»։ Սարդը որ՝ գարան մտած ճանճին էր սպասում, հէնց որ տեսաւ թէ ճանճը ոստայնի մէջ բռնուեցաւ, վրայ թռաւ, իւր խայթոցը նորա սիրտը խրեց, ծծեց արիւնն ու ցամքեցաւ ճանճը։ Հայու համար Հայոց եկեղեցու ազատ ու ապահովիչ օդը ձանձրալի թուաց, նա օտար աւերակների ոստայնը սիրեց և արնաքամ եղաւ։

Հաւատով մարդը բոյն ունի, հաց, տուն, սիրտ ունի, թերահաւատ մարդը բոյն չունի, թափառաշրջիկ է, հաց չունի, սիրտ չունի։ Սրտի առաքինութիւնները հաւատի ընծայածն-ն են ձուլւում։ Որն է թերահաւատի ամպի վերայ նայեցէք. նախանձի ո՞ր փայլթոց, ատելութեան ո՞ր թոյն, չարութեան ո՞ր եղջիւր, չարախօսութեան ո՞ր սեմ, գրգռարարութեան ո՞ր կարկուտ, ստութեան ո՞ր կայծակ չեն տեղում, չեն թափւում այնտեղ։ Այսպիսի ժողովուրդ ամբարտա-

թեան օրէնքով զրկուած և երկրաւոր և երկ-նաւոր դրախտից։

Յիշեմ Սրբազան պատմութիւնից մի դէպք, ուր փրկարար ու յաղթական հաւատի ոյժն է փայլում. Ս. Գրքի այդ փոքրիկ պատմութիւնը հազարաւոր տարիների փորձն ու իմաստու-թիւնն իւր մէջն ունի։

Իւր պատանեկական օրերու հաւատովը զօ-րեղ և Աստուծուն սիրելի Դաւիթը թագա-ւորութեան վերջին տարիներում թուլացաւ հաւատով, պակաս առաքինութիւններից, վախ-կոտ, կասկածոտ դարձաւ։ Իւր ժողովուրդն էլ պաղեցաւ հայրենի տաճարի սիրուց, հաւատից, օտարամէտ դարձաւ, դաւաճանութիւնների ետևից ընկաւ ու անառակ եղաւ։ Փղշտացիք Իսրայէլին խորտակելու յարմար վայրկեան համարեցին և Սաւուղի վերայ պատերազմ եկան։ Երկու թշնամի զօրք բանակ են դրել իրար դիմաց։ Փղշտացոց բանակից մի վիպաձև հսկայ ամէն առաւօտ դուրս է գալիս կանգնում Իսրայէլա-ցոց առաջ հեթանոսի անզուսպ խօսքերով անարգում նոցա ու նոցա Աստուծուն և իրեն հետ մենամարտող է պահանջում։ Սաւուղն ու իւր զօրքը, որոց սրտում նախնեաց հզօր հա-ւատը թուլացել էր, որոց հոգու մէջ փառքի նախանձախնդրութեան հուրը չէր բորբոքում,

ահ ու դողի մէջ էին կողխտ Փղշտացու առաջ, որի հետ քաջութեամբ մաշուած Իսրայէլը կռուեցնելու հերոս չունէր։ Բարեպաշտ Յեսսէի պատանի որդին՝ Դաւիթը իւր զինուոր եղբայրներին հաց էր բերել բանակը. պատահմամբ նա տեսաւ Փղշտացուն Իսրայէլի Աստուծուն անարգելիս։ Ցաւեց պատանու հոգին, երբ տեսաւ թէ, յայտնի ու հաւատն առ Աստուած այնքան պակսել է Իսրայէլացոց բանակում, որ հեթանոսի անարգանքը տանում են։ Հաւատացած լինելով թէ Աստուած կարող է յաղթացող Գողիաթին խորտակել նոյն իսկ պատանու ձեռքով, մի սորկ քար է դնում պարսատիկի մէջ վրայ վազում անհեղ Գողիաթին. հաւատի քարը գլպչում է նորա ճակատին, հսկան վար փռւում աւանդում հոգին։

Բաւական է. յօգնութիւն կոչելով մեզ այսօրուայ տօնի ս. Նահատակաց հոգին, մօտենանք բարձրեալ Աստուծուն և սրբազան առաքելոց անուշ մրմունջով աղօթենք «Տէր, յաւել մեզ հաւատս» *)։

---

*) Ծանօթ Խօսուած է Օդեսայի Ս. Լուսաւորիչ եկեղեցում 1897 թուին, Ս. Վարդանանց տօնի օրը։

## Դ.

## Ի ԽՈՐՈՑ ՍՐՏԷ.

(Նուէր ճեմարանական կրսեր ընկերներիս)

Նուիրական այս վայրում, ընկերասէր խաղաղութեան ծոցում, ինչպէս գիրգ մանուկ ծնողի գրկում, անցաւ և այս տարին ձեզ համար այն օրուանից, երբ ձեր անոյշ գեղգեղանքով առաջնորդեցիք մեզ դէպի Արարատի արփիածին ծաղիկները։ Մատաղ եղբայրներ, ես չեմ մոռացել այն օր, երբ դուք հրաւիրում, տանում էիք մեզ դէպի Վանանդեցի երէցը, որի հոգեշունչ քարոզը քրիստոնեայ հայ կորիճներ փռեց այն դաշտի վերայ և մեռան նորա ինչպէս ցորենի հատիկը հողի մէջ, որպէս զի «բազում արդիւնս տանին» ըստ աւետարանական բանին։ Բոլորեց տարին, կրկնեցիք նոյն հանդէս։ Քանի՜ յոյսեր, քանի՜ ոսկեղէն երազներ շղարթեցին մեր անրջուտ գլուխներում այն օր, երբ Վանանդի փառքն ու Արարատը կ'դիտէինք, ունկնդիր կ'լինէինք ձեր մատաղ կրծքի թընդիւնին այն հրաշալի տեսարանի առաջ և կ'թրթռար մեր սիրտ ուրախութեան զգացմունքից, ինչպէս գալարուն՝ գեփիւռի առաջ,

ու մեր երեւակայութեան մէջ կ'պատկերանան թէ դուք այն արնալից պետնից էք աճել, թէ Աւարայրի քաջաց ոգին իւր շնչով շօշափել է ձեզ։

Այսօր էլ նոյն միաբանական պատկառելի ուխտը եկել ու շուրջ բոլորել է ձեզ։ Տեսե՞լ էք դուք ոսկեծղի արտեր թարմ առաւօտու ղոհարներով պսակուած, օրօրուելիս մեղմ հովից վարդավառ արշալոյսին. կամ թէ ադամանդեայ, շողշողուն հատիկներ հերարձակ որթերի կուրծքը զարդարելիս։ Եւ տեսե՞լ էք դուք երբ սոսկալի շառաչիւնով բացուել է երկինք, մի ծայրից միւս ծայրը հոսել է մի հրեղէն գետ եւ՝ ինչպէս չոր տերեւ մրրիկի առաջ, թափուել է կարկուտ պերճ դաշտի վերայ. այն հպարտ հասկերը խոնարհուել ու ուժաթափ փռուել են իրենց արմատների մօտ, արտը մերկացել է իւր ճոխ հանդերձն ու լերկ դարձել և կանաչ-վարս որթերի գագաթները չոր պանդի փոխուել։ Ճիշտ այսպէս է այն միաբանութիւնն այսօր, որ խոցոտուած Յոբ երանելու նման հետզհետէ առաւել չարագոյն համբաւների է սպասում և հողմավար քշուում, և գիտէ, անյատակ ծովի մէջ թէ Յովնանի նման կէտ ձկների փորում գտնելու իւր գերեզման։ Բայց նա չէ լքանում. «Յոյս ոչ երբէք ամաչեցուցանէ» առաքելական բանը յօգնութիւն կոչելով, կրկին եկել է այսօր

յոյսերի այս վայրը սիրտ առնելու, մխիթարութիւն գտնելու։

Այս վիճակի մէջ էր և Հայոց ոսկեդարու հոգևորականութիւնը հալածանքների ծովում, ծփալիս և պշուցեալ բայց յուսալից աչքերով վանքերի պարիսպներից նրա էր նայում թէ երբ, երբ պիտի ճշմարիտ աստուածպաշտութեան և աննկուն հայրենասիրութեան սերմերն աճին, հասունանան և հոգեվարք հայրենիքին փրկարար ոյժ տան։ Տեսան նոքա իրենց վաստակը. Աստուած Հայոց եկեղեցու քարերից Աբրահամի որդիք յարոյց, որոնք կտրիչ Վարդանի առաջնորդութեամբ Տղմուտի ափերը կարմիր ներկեցին ի փառս Աստուծոյ, ի պարծանս հայրենեաց և ի պատիւ անձանց։ Ո՜րչափ գեղեցիկ էր այն հանդէս, որ այսօր մեր առջև բացւեց յանուն Վարդանայ և Սրբոց Վարդանանց։

Բայց, եղբայրներ, որչափ էլ մեր աստուածաբանները ջոկել անջատել ճգնին հայրենասիրութիւնը կրօնից, ես առաւել պիտի հաստատուիմ իմ հաւատիս մէջ թէ հայրենասիրութեան հիմունքը Ս. Գրքի ընկերսիրութիւնն է և Հայու հայրենասիրութիւնը Հայոց վանքերի պարիսպներում է ծլել։ Վանքերի աշակերտ ու փառակալն Պարթև Սահակի լեզուն էր որ խօսեց. «Բայց զխմբրել լինիցի ինձ այդ փոխանակել

դիմ ախտացեալ ոչխար ընդ այլում առողջ պտղանի». վանքերի աշակերտ Ղևոնդի շունչն էր հոգեացնում Աւարայրի քաջերին և շղթայակապ, այլ բաց ճակատով կորագլուխ պատաճանին շամփուրում եռնիյը ձայն տալով «Եթէ դու, պատաճա՛ն, կենդանութեամբ զգլուխդ ի վերայ ուսոցդ ի Հայս տանիս, ապա ընդիս Տեառն Աստուծոյ չէ խօսեցեալ». վանքերի աշակերտ կարմիր Վարդանի ձայնն էր որոտում փառքի դաշտում. «Հաստատուն կացէք, ով քաջք, յանշուշտ զօրականն մեր, երկիւղ թերահաւատութեան է նշանակ». վանքերի աշակերտ անուշիկ Եղիշէն էր, որ ազգային միութեան օրէնքը սորուեցուց. «Զուգութիւն է մայր բարեաց, անզուգութիւն՝ ծնող չարեաց». վանքերի աշակերտներ էին անմահ ու Գայլ Վահանները. անվեհեր Մուշեղներ և Հազարաւոր՝ հայրենասիրութեամբ լի առաքինի արանց և եթէ վանական պարտէզներից քաղուած այս ընտիր ծիլերին միացնենք Խորենացիներ, Փարպեցիներ և Նոցա ընկերներ, որոնք տաժանակ աշխատելով վանքերի ազգու անկիւններում գրեցին ու բերին ժառանգութիւն թողին մեզ մեր անցեալը—, այն ժամանակ անհերքելի պիտի լինի, որ մեր ոգեւորութեան բուն աղբիւրը վանքերի պատմութիւնն է եղել, մեր ձգտումնե-

րին յարմար հերոսներ. միշտ այն տեղերումն ենք որոնել ու գտել։ Այսօր և դուք վկայեցիք որ բռնաւոր Ցազկերտը առաւել խաչից էր երկնչում քան սրից և Հայոց զօրքին առաջնորդող խմբի մէջ Քառալժնին ու երէց Վանանդեցին էին փայլում։

Այսօր եթէ միաբանութիւնը նոյնը չէ, վիճակը նոյնն է. եթէ կարիքը նոյնը չէ՝ պահանջը նոյնն է, եթէ ալիքներն այլ՝ ծովը նոյնն է, եթէ զէնքերն այլ՝ պատերազմը նոյնն է և առաւել սոսկալի։ Եւ երանի՜ նոցա, որ պողպատի զէնքերով խոցեցին ու խոցուեցան ու ինքնապահութեան ժպիտն երեսին թռան այս աշխարհից երկնից պսակն ստանալու, երկրի վերայ անանց փառք վաստակելով։ Ես չգիտեմ դեռ մի կորած ազգ, որի յիշատակը պատերազմի դաշտումը թաղուած լինի, որի գոյութեան արմատը սրով կտրուած լինի, բայց գիտեմ, որ ազգային անտարբերութեան, անխղճութեան ծոցում շատ ազգեր իրենց գերեզմանը պեղեցին։ Եւ ինչ է այսօրուան մեր կեանք, եթէ ոչ անտարբերութիւն դէպի մեր սեփական կեանք, նոյնութիւն նկատելը հարազատ և օտար հողի մէջ, անտարբերութիւն դէպի ազգային կրօնն, որի մէջն է միայն ազգային յառաջադիմութեան շարժող ոգին։

Մահաշունչ անտարբերութեան պատճառները բազմապիսի են, բայց գլխաւորն՝ ազգայնացած աստուածայինը չհասկանալու, չուսումնասիրելու և ճշմարտութիւնը օտարի աչքով տեսնելու մէջն է։ Ազգայնութիւն արհամարհելու անբաժան հետևանքը օտարամոլութիւնն է կամ առնուազն անտարբերութիւնն է. իսկ անտարբերութեան ապականուած հողը միշտ աղանդաւորներ է հանում եկեղեցու մէջ, դաւաճաններ՝ հայրենիքի ծոցում, որոց իդէալը կապոյտ եթերքից սահում իջնում է մինչև անդունդի ոսկին կամ առնուազն մինչև օտարի ոտքը։ Այսպէս են բազմանում այն գայլերը, որոնք մեր հօտի անդամ կոչուելով հանդերձ իրենց անդամակիցների մսովն են յագենում։ Անտարբերութիւնը իւր ետևից քաշում բերում է նաև մօդայի անունով ապականութեան մի հեղեղ որի ալիքների տակն են թաղուում ազգային որոշ կեանք, սովորութիւն, սրբութիւն, աւանդութիւն և լեզուն։ Մէկ խօսքով անտարբերութիւնը ապականուած սրտի բնական բերքն է և ազգութեան վսեմ գաղափարների անդարձ կորուստն ու գերեզմանը։ Եւ այն օրուանից երբ այս ոգին և մեզ փակեց, բանաստեղծի խօսքով՝

«Փշեց քամին, եղան հովեր, սառեցաւ շունչը Հայուն

Դառնահամբոյր դարձան դարեր, տարին ու կեանքը Հայուն
Խորշակահար ինկաւ գետին Նարգիզ, Ճուշանը Հայուն,
Գլխիկն ի կոր, թերթն ի թափին կենսատու Վարդը Հայուն»։

Այո, անտարբերութեան խորշակը զարկեց թօթափեց ու թառամեց Հայու Վարդ, Նարգիզ ու Ճուշան. նորա ոգին իբրև մի մահաշունչ քօղ ծածկեց մեր կեանք. և մի՞թէ հնարաւոր է նորա տակից նախնեաց ոգևորութեամբ անձնադիր քաջեր սպասել։

Ահա այն սոսկալի թշնամին, որի դէմ պիտի կռուի ժամանակակից զինուորը, մի զինուորութիւն, որ ընտրեալներին է պահուած։ Բայց ո՞ւր են ընտրեալները. Ե՞րբ, ա՜խ ե՞րբ պիտի Աստուած մշակներ հանէ ի հունձս իւր։ Արդարև ազգի կարիքն ու օգուտը գաղափարներ են ծնում և գաղափարի քարոզիչները շատ են, բայց ո՞վք են դոքա եթէ ոչ անտարբերութեան զաւակներ, հեշտասիրութեան և արծաթի մոլեալ երկրպագուներ, որոնց քարոզը մի անհոգի ձև է, զուրկ սրտի անկեղծութիւնից և նոցա խօսքը ծայր է առաքեալի քարոզած վեհ ճշմարտութեան, «Զի ոչ եթէ բանիւք է արքայութիւնն Աստուծոյ, այլ զօրութեամբ»։ Ուստի, ուստի՞ ակնկալել ազգային անտարբերութիւնն ողբացող Հայրապետն ու

պատկառելի միաբանութիւնն անտարբերութեան դէմ մաքառող կորիճներ.................
Ուստի անկեալ, միաբանութիւնը Պարթևի ձայնը վերստին լսել թէ՝ ճշմարտութիւնն այս է, որ իմ հիւանդ ոչխարը լաւ է օտար առողջ գազանից։

Ձեզ, եղբայրներ, միայն ձեզ է մնում պսակել այս յոյսեր. դուք էք միայն ձեռնհաս այս Նուիրական յարկի տակ քրքրել Հայու անցեալն ու ներկան և ճշմարտութիւնը այնտեղ որոնել։ Եթէ բաւեր չեն այդ պերճախօս արտաբերութիւններն, որոնք սիրտ շարժելու չափ զօրեղ են, եթէ զօրութեամբ է, այդ քարոզներն և ոչ «բանիւք», եթէ Աւարայրի հերոսներն իրենց բնակութիւնը ձեր սրտերումն են ընտրել, այն ժամանակ միաբանութիւնը կարող է համարձակ կրկնել. «Յոյս ոչ երբէք ամաչեցուցանէ» և առաքինի նախնիք իրենց պսակը դէպի ձեզ մեկնելով երկնքից ձայն պիտի տան Մայր Սիօնին. «Զարթիր, զարթիր Սիօն և զգեցիր զփառս քո, զի ոչ յաւելցէն այսուհետև անցանել ընդ քեզ պիղծք և անթլփատք»։

Կմնայ մեզ, Սրբազան հայր, սիրել այս ազնիւ ու անբիծ սրտեր, որոնք խոստանում են իրենց անձով պսակ կապել Սիօնի շուրջը։

*աղօթել որ Աստուծոյ օրհնութիւնն առատանայ գէթ այս անդաստանի վերայ։*

*Վարդանանց կարմիր յիշատակն անջինջ պահելով. մեր սրտերում աղօթենք այս խորհրդաւոր վայրկեանին ամենքս համար. «Աստուած, մերժեցեր և աւերեցեր զմեզ, բարկացար և գթացիր ի մեզ։ Մի ընկենուր զմեզ, Տէր, ի ժամանակս ծերութեան, ի պակասել զօրութեան մերոյ, մի թողուր զմեզ։ Արի, Աստուած և դատեա զդատաստանս քո, յիշեա զնախատինս մեր, որ յանզգամաց զօրհանապազ......» *)։*

---

*) Ծանօթ. Խօսուած է 1896 թ. փետրուարի 1-ին Ս. Էջմիածնի Հոգևոր Ճեմարանի հանդիսին ի յիշատակ Սրբոց Վարդանանց Նահատակաց ի դիմաց հանդիսական միաբանութեան։

## Ե.

## ԳԷՈՐԳ ԿԱԹՈՒՂԻԿՈՍԻ ՕՐՀՆԵԱԼ ՅԻՇԱՏԱԿԻՆ

Մեծ մարդու յիշատակի առաջն ենք կանգնած. օրհնուած յուշարձան, որի առաջ խորհող մարդու գլուխն է խոնարհւում։ Լաւագոյն զգացմունքների փնջեր ենք դնում այդ արձանացած անուան պատուանդանի վերայ։ Յեղյեղուող զգացմանց ալիքը քշում տանում է մեզ դէպի խոհականութեան խորունկ ծովը, որի ափին մեծ մարդիկն են պատկերանում։ Դոքա բոլորն էլ դէմքով նման, տարբեր են միմեանցից իրենց հանդերձներով միայն։ Մէկը լայն վերարկուն հագած, բոբիկ ոտքով ու գլխաբաց իւր աչքը դէպի մութ ապագան է սեեռել. դա մարգարէ է։ Միւսը՝ խաչակիր հսկա՛յմէ, կրծքին աւետարան է սեղմել. շըրթունքներից կայծեր են ցայտում, սրտեր վառում. դա քարոզիչ է։ Երրորդը ակօս-ակօս կնճիռներ է հանել իւր ճակտին, մտածմունքի մէջ է ընկղմուել, մարդու սկիզբն ու վախճանն է որոնում. դա փիլիսոփան է։ Մի ուրիշը դայլուօն ունի, դէմքից սարսափ է թափւում, որից յանցագործներն են սարսում. դա արդա-

րութեան գանը բազմած խաղաղութեան իմաստուն թագաւո՛րն է, և այլն։ Շատ են դորա, միմեանց նման, հաւասար սիրելի, հաւասար անմահներ։

Որքան և ձգտիք մօտենալու մեծ մարդուն, դուք չէք կարող հասկանալ նորան, մի հայեացքով տեսնել նորա ամբողջութիւնը. դա մի աշխարհ է, մեր աշխարհից մեծ, մի անհուն տարածութիւն, մի հանելուկ, որի լուծումն փոքր մարդու բան չէ, վասն զի «Ոգիք մարգարէից մարգարէից միայն հնազանդ են»։ Այս իսկ պատճառով դժուարանում եմ ասել որոշապէս թէ. ինչ է մեծ մարդ, բայց միայն այս թէ. մեծ մարդը երկնային մի օրհնութիւն է, որ երկնքից է ուղարկւում աշխարհ, անհամ կեանքը համեմելու, այն է. ինչ որ կոչուել է աղ երկրի։ Բայց կ՚յաժարիմ ճշմարիտ մեծութեան էական յատկութիւնները յառաջ բերել։

Ճշմարիտ մեծը, որ աշխարհ է եկել տիրական շնորհներով, մարդկանցից սովորելու բան քիչ ունի, ուստի և մեծի նախնական դպրատունն առանձնութիւնն է, գիրքը՝ բնութիւն, դաստիարակը՝ վշտոտութիւն. մեծն ինքն է իւր ուսուցիչ և ինքն իւր աշակերտ։

Յաւիտենական մի ամենազօր աջ օժտում է մեծին մտաց ամենաթափանց աչքով, որ

մարդկանց ապագան նախատեսի. սրտո՛վ որ այլոց համար բաբախի, գործո՛վ որ այլոց համար զոհ տայ:

Մեծը ճշմարտութեան զինուոր է. իսկ ճշմարտութիւնը խօսքի և գործի ներդաշնակութիւնն է, մտքի ու իրականութեան ներդաշնակութիւնը: Նա խորապէս համոզուած է, թէ ճշմարտութիւնն իր մէջ առողջարար բալզամ ունի, մոլորութիւնը՝ ժանտուած թոյն. Նա համոզուած է թէ առաւել հեշտ է կարծել որ թռչունները իրենց անզօր թևերով արևի երեսը կ'ծածկեն, քան հաւատալ թէ մոլութիւնն ու տգիտութիւնը կարող լինեն ճշմարտութիւնը խափանել:

Մեծ մարդը հարթ հաւասար դաշտ չէ, ուր ամէն ձայն, ողբ ու կոծ, խինդ հառաչանք, գնում կորչում է անարձագանք, այլ լեռների ու հովիտների մի անհարթ տարածութիւն, ուր ամէն ձայն զօրեղ արձագանքով է կրկնուում:

«Մեծի գլխում աշխարհն իբրև տեսութիւն կամ վարդապետութիւն գոյութիւն չունի, այլ իբրև ջինջ պատկեր» ասում է մի իմաստասէր:

Բոցոտ ու վեհ զգացմունք, մտքի վսեմ թռիչք, անյողդողդ կամք, ահա այն գծերն

որ մեծամարդուն Օլիմպոսի լեռն են հանում, անմահ աստուածներին խառնում։

Տարօրինակ է մեծութիւն. իսկ ամբոխն ու միջակութիւն հալածում են ամէն գեղեցիկ տարօրինակութիւն։ Անմխիթար անշնորհքութիւնը փշէ պսակ է բոլորում շնորհալի մեծութեան ճակտին։ Սակայն մեծ մարդուն չեն սարսափեցնում ոչ Պռոմէթէոսի տանջանքները, ոչ Լուսաւորչի թունալից վիրապ և ոչ Դանիէլի առիւծուց գուբը. վասն զի մեծ մարդու հոգին ազատ է, իսկ մարմինը նոյնքան օտար իրեն, որչափ մի արտաքին իր։

Մեծ մարդու վարձատրութիւնը գերեզմանի այն կողմն է լինում. գերեզմանի վերայ են հաստատում մեծի ցանած պտուղներ, ու յետնորդաց քիմքը քաղցրացնում։ Մեծ մարդը մահանում է որ յաւիտենութիւն առնի և անմահանայ, դարերի վերայ թագաւոր դառնայ։

Մեծերի հոգին ըմբռնող մեծ Կարլէյլն ասում է թէ. «Մեծ մարդիկը զարմանալի մարդիկ են և իսկապէս նոցանից աւելի զարմանալի ոչինչ չ'կայ։ Մարդու կրծքում աւելի ազնիւ զգացմունք չկայ քան հիացմունքը մեծութեան առաջ։ Անկումն ոչ մի ժամանակի չէր սպառնայ, եթէ այդ ժամանակը մեծ մարդ ունենար»։

*Արդ, սանունք ճեմարանի, ի պո՜ւճ, ի դո՜ւճ մեծութեան և մասնաւորապէս Հիմնադրի արձանացած մեծութեան առաջ, դա ընտիր նախնեաց մեծութիւնն է, որ ժառանգաբար մեծ Հիմնադրին հասաւ։ Մերձեցէք մեծ մարդու քղանցքներին, թող նորա շունչը հպի ձեզ։ Մեծ նախնիք վերին են մնացել, մեր ժամանակին անկում է սպառնում. վեր նայեցէք նոցա ու բարձր հառաչանքով կարդացէք. «Հայր, հայր կառքդ Իսրայէլի և հեծեալքդ նորին, հանգիցէ հոգի քո ի վերայ մեր» և թող հանգչի ձեզ վերայ Մեծին Գէորգայ և մեծ նախնեաց հոգին ու հրեշտակները վերէն ձայն տան՝*

*Հայոց սպառնալիք չկայ,*
*Զի նոցա մէջ շատ մեծ մարդ կայ։* *)

---

*) Ծանօթ. Խօսուած է 1899 թ. Գէորգեան Ճեմարանի 25-ամեայ յոբելեանին Ս. Էջմիածնի սեղանատանը կարգադրութեամբ հանդիսադիր Տեղապահ Տ. Արիստակէս Սրբազան Արքեպիսկոպոսի։

Պարտականութեան ծանր ու քաղցր լուծը շալակած, Հայ քրիստոնեայ համարիւն եղբայրներիս սիրովը թեւաւորուած, աչքս դէպի սորապասակ Խաչն Յիսուսի, դողդող քայլերով Տիրոջ Սրբազան ոտքն եմ բարձրանում. այս Սրբազան սարի լանջէն թօթով լեզուով Տիրոջը խօսքը պիտի քարոզեմ ձեզ, քրիստոնեայ Հայ եղբայրներ։ Երեւակայութեանս առաջ յայտնի ծաղկով ցանուած մի աշխարհ է բացւում թէ դուք, իմ ունկնդիրներ, մեծի պահոց խորհրդաւոր օրերում այն սրտով, այն հոգով կ'լսէք ձեր եղբօրը։ Աղօթեցէք, որ կենդանի խօսքի հզօրագոյն վարդապետը այժ առաջ իմ տկար ձայնին, որպէս զի անարձագանք չկորչինա, այլ ձեր լսելիքից խաղաղ հասանքով ձեր սիրտն իջնի, որտեղ խարոյկ վառէ, յուսոյ ալիք յուզէ, հաւատի վէմ հաստատէ ձեր կրծքի ներքեւ։

---

## Զ.

## ՔՐԻՍՏՈՆԷԱԿԱՆ ՄԻԱՅՆՈՒԹԻՒՆ.

Երբ ես ուզում եմ քրիստոնէական կեանքի ճանապարհը ցոյց տալ, որ տանում է դէպի վեր, դէպի կատարելութիւն, դէպի երանական մէկ վիճակ, ուր ատելութեան այգիները ամայի բարկ արևից ցամքած է, ուր նախանձի ծառը ճղակոտոր թափուած ընկած է, ուր մարդ-կային վիշտը լռել, ժպիտն է ծաղկել, բռնու-թիւն ընկել, բարութիւն կանգնել, իմ առջև այդ ճանապարհի սկզբում արձանանում է Միայնութիւն և փորձութիւն: Ահա այն եր-կու դժուարանցանելի դարպասները, որոնցով քրիստոնեան կատարելութեան ճանապարհն է մտնում։

Առանձնութիւնը կամ միայնութիւնը եր-կու կերպ է լինում. Գիշերուան սև շղարշը երկնքից իջնելով ծածկել է երկիր. հեռու գիւ-ղից, հեռու իր ընտանեկան օջախից, հովտի մէջ, գետակի ափին նստած է հովիւը։ Ոչխար-ները մակաղած լուռ են ու մունջ, ինչպէս գի-շերուան բնութիւն. մարդկային ոչ մի ձայն, որ վրդովէր միապաղաղ կարկաչն ընդհատէ։

Միայն է հովիւ, բայց չէ միայնակ. Նորա հոգու մէջ պատկերանում, արձանանում է հովուուհին, իւր զաւակները, որոնց վաղը տեսնելու անժխտելի յոյսն ունի։ Հովիւը միայնակ՝ սիրտը չէ միայն։

Լուսնկայ պարզ գիշեր. պայծառ լուսին իւր բիւրաւոր ուղեկիցներով խաղում է մարմանդ ծովի մանրիկ ալիքների հետ։ Ծովի խորքում լողում է մի նաւակ. միայն մի զոյգ հզօր բազուկ առաջ է վարում նաւակը, փռում ետեից լայն ուռկան. մարդկային ոչ մի ձայն, որ ընդհատէր թիակների ել և էջը։ Ձկնորսը միայն է, բայց չէ միայնակ. Նորա երեւակայութեան մէջ ժպտերես կանգնում են կինը և զաւակները, որոնց սէրը սիրտ է տալիս ձկնորսին, որոնց վիզը փարուելու յոյսը թեւ է տալիս նորան։ Ձկնորսը միայնակ՝ սիրտը չէ միայն։

Միայնութեան այս տեսակը արտաքին է, քաղցր է. և չէ սոսկալի։

Երբ դու մարդկանց բազմութեան մէջն ես. ամէն կողմից ժպիտներ են փայլում քո աչքիդ առաջ, դու էլ ակամայ ժպտում ես. ձեռքեր են մէկնում և դու սեղմում ես. խօսում են՝ պատասխան ես տալիս. բայց ոչ ժպիտներ, ոչ սեղմումն, ոչ խօսքը բազմութեան չի կենդանացնում քո հոգիդ, համակրութեան կրակով չի

չի տաքացնում քո սիրտ. մարդիկ սիրտ չեն հասկանում. Ճնշւում է նա պատառուել ուզում։ Դու այդ բազմութեան մէջ խաւար միայնակ ես, միայնակ ու թշուառ։ Շուրջդ լիք մարդիկ՝ սիրտդ է միայնակ։

Ահա քեզ մեծատան ապարանք. բազմաթիւ աշտանակների պայծառ լոյսը հեղեղել է ոսկեգոյն պատեր, ոսկեղէն աթոռ ու զարդ։ Այդ լուսեղէն հեղեղի մէջ պճնաւորուածների վերայ սեղանների շուրջը բազմած են հարիւրաւոր մարդիկ. ցնծութիւն, ծիծաղ, պար, երգ, սէր, գինի միացել և կեանքի գարնանային ժխորն են կազմել։ Դու էլ այստեղ ես. բայց կեանքի փըրփրուն ժխորը յաղթութիւն չի տալիս պապած սրտիդ. քեզ չեն հասկանում. դու միայնակ ես՝ ինչպէս անապատում։ Շուրջդ լիք մարդիկ սիրտդ է միայնակ։

Երբ դու ես գտնւում գերեզմաններում, ուր սրտիդ կէսը թաղեցիր, բազմութեան սուգը, ցաւակցութիւնը, խօսքը, ձայնը քեզ աւելորդ են թւում, անախորժ և անտանելի։ Եթէ այդ բազմութեան աչքը լուսոյ ճառագայթի պէս թափանցէր կրծքիդ մէջ, այն ժամանակ կտեսնէր միայն թէ սիրտդ խաւար միայնակ է. Այո, շուրջդ լիք մարդիկ՝ սիրտդ է միայնակ։

Ահա այս տեսակի միութիւնն է բարոյական մենակութիւն, երբ քեզ չեն հասկանում, երբ սիրտդ միայնութիւնից ցամաքում չորանում է և մերթ յուսահատութեան փշերով խոցոտում հոգին։ Այո, սրտի մենակութիւնը բոլոր մենակութիւններից աւելի սոսկալին է։

Սորանից փոքր ինչ տարբեր, աւելի դառն բայց և աւելի վսեմ է քրիստոնէական, գաղափարական միայնութիւնը։

Ամէն մի նորածիլ ճշմարտութիւն, որ դեռ ծառ չի դարձել, անթիւ ճիւղ ու լայն տերև չի փռել իւր շուրջը, տեսանելի չէ ամբոխին. վսեմագոյն մարդիկն են միայն, որոնց աշխարհ է ուղարկում Բարձրեալի հօր Աջը, որոնք ճշմարտութիւնը իրենց կրծքի մէջ տանելով աշխարհ են գալիս. նոքա սիրոյ ծաղիկ ունին իրենց ձեռքում, որի անոյշ հոտից առելութեան ժամանակն է խոստանում. նոքա ճշմարտութեան մուրճ ունին, որի ամէն մի հարուածից մոլորութիւնն ու կեղծիքն է դողում։ Բայց նոցա քարոզը անլուր է մնում, մինչդեռ անբնակ անապատում արձակուած մի ձայն։ Այս դեռ քիչ է։ Սիրոյ և ճշմարտութեան հերոսների դէմ կանգնում է կոյր ամբոխի նախանձը, բուռն ատելութիւն, հալածանք, ծաղր, անարգելի տանջանք, որ շատ անգամ նահատա-

կուլթեան վարդ արիւնով է պսակուում։ Այսպիսի վիճակում միայնակ է գաղափարական մարդը, խոյսու միայնակ քրիստոնէութեան ճշմարիտ անվեհեր հերոսը, ով որ է նորան հասկանում, ով որ համակրում. ով որ սիրում։ Միայնակ է այն սիրտը, որ սիրոյ կրակ ունի, ճշմարտութեան հզօր ձայն, կենդանի խօսքի քոյափառ շրթունք։ Անշուշտ այսպիսի միայնութեան տանջը հարուածից կ'փշրուէր սուրբերի սիրտը, ինչպէս մի դիւրաբեկ խեցի, եթէ նոքա հաւատի աչքով չտեսնէին քաջալերող Հայր Աստուծուն, եթէ նոցա կրծքի մէջ չ'հնչէր մի անուշիկ ձայն թէ՝ քաջացիր հէգ հերոս, մահն անգամ կարող չէ յաղթահարել այն ճշմարտութիւնը, որով քո սիրտն է վառուում։

Միայնակ էր հէգ, հալածական Եղիա մարգարէն, որ իւր հոգու թախիծն այսպէս էր սփռում Բարձրեալի Աթոռի շուրջը. «Տէր, Իսրայէլի որդիքը հեռացան քեզնից, քո սեղանները կործանեցին, մարգարէներից սրով կոտորեցին, ես միայն եմ մնացել, ինձ էլ են ուզում սպանել.... առ իմ հոգին Տէր»։ Միայնակ էր փառաւորւոյ Հրէաստանի համար սիրակէզ Եսայի մարգարէն, որի ձայնից Աստուածն էր շարժուում. «Տէր ով է հաւատում իմ խօսքերին»։ Միայնակ էր հսկայ Պօղոս Սրբազան առա-

քեալը որ Հռոմի բանդում իւր Թուղթն այս սրտամաշ խօսքերով էր վերջացնում «Ամէնքն էլ թողին ինձ ու հեռացան»։ Միայնակ էր վաթսուն հազար ժողովրդի առաջնորդ Հզօր Մովսէսը, որի սիրտը չէր հասկանում Եգիպտոսի սոխ ու սխտորի սիրահար ապերախտ ժողովուրդը.....

Ցիրաւի երբ ճշմարտութեան սերմերն ընձիւղ տուին ու սրբոց գերեզմանների վերայ ծառ դարձան, բուրաւոր հալածողների շըրթունքներից տաք տաք համբոյրներ տեղացին նոցա նշխարները դրկող սուրբ հողերի վերայ. իսկ մինչև այդ միայնակ էին նոքա, միայնակ ու նկուն։

Բայց այդ բոլոր միայնութիւնները նմանում են բացարձակ միայնակ Փրկիչ Յիսուսի միայնութեան առաջ։

Տիեզերքից առաւել լայն սիրտը լցրել է անհուն քաղցրութեամբ, երկնքի մարգարիտներով, շրջում է Հրէաստանի բարձունքների վերայ, հովիտներում ու դաշտերում. Նորան խառն բազմութիւն է հետևում ամէն տեղ. Նա աշակերտներ ունի, որոնք սիրում են Նորան. բայց միայնակ է Նա. ոչ ոք կ'հասկանայ Նորա սիրտ։ Գեննեսարէթի ալեկոծուած ծովի վերայ նաւակում քնած է Նա, երբ արթուն աշակերտ-

ները վտանգի բերանում մեղադրում են Նորան, ափսոսում որ Նորա խօսքերին հաւատալով աշակերտ դարձան և այժմ խեղդուում են, տըրտնջում են Նորա դէմ։ Նա աշակերտներ ունի բայց. միայնակ է։

Միայնակ էր Նա անապատում, միայնակ էր Նա Գեթսեմանի պարտիզում արտասուալից աղօթելիս, միայնակ էր Նա մատնութեան գիշեր, երբ աշակերտքն անգամ թողին ու փախան, միայնակ էր Նա քառաթևի վերայ տարածուած ժամանակը։

Այս կատարեալ միայնութեան մէջ աշխարհի հրապոյրը չխախտեց Նորա կամքը, աշխարհի փառքի առաջ անշարժ մնաց, կեանքի գետը չկարողացաւ քշել Նորան. Նա անդրդուելի մնաց իւր ցաւերի մէջ ու անձնական հերոսութեամբ պաշտպանեց քան երկնքի լուսաւորները պայծառ վսեմ գաղափարները։ Այսպիսի հերոսական ու սուրբ մաքառման ժամանակ, այսպիսի կատարեալ առանձնութեան մէջ Նա տեսնում էր Երկնաւոր Հօրը միայն. «Հայրն ինձ հետ է» ասում էր Նա, աղօթքով խօսում Բարձրեալի հետ ու Նորանից իբրև մարդ քաջալերութիւն ստանում։

Արդ, հասկանալի է թէ ինչ է քրիստո-

նէական առանձնութիւնք, քրիստոնէի միայնութիւնք։

Իմ պատուական ունկնդիրներ, հաւատում եմ թէ դուք քրիստոնեայ էք և ուրեմն ունիք միայնութեան ժամեր, ունիք սուրբ առանձնութիւն, երբ ձեզ չեն հասկանում և պէտք առանձնուել միայնութեան մէջ։

Քահանայ եղբայր, երբ սրտիդ մէջ ժողովրդասիրութեան ծառը բարձրանայ, ճիւղաւորուի, տերևակալի ու դու կամենաս փռել դայն քո հօտիդ վերայ բայց նա չհասկանայ քո սիրտ և խիղճ միայնակ մնալով վհատիս, կորցնես սէրը կրծքիդ մէջ և փոխանակ սուրբ միայնութեան մէջ առանձնանալու և աղօթելու, քահերիդ համար դնաս ու խառնուիս մոլար ամբոխին, դու թէ և փիլիսոփայ թէ և խաչակիր, բայց չես քահանայ։

Քոյր իմ, հայ տիկին, երբ մայրական կոչման հաւատարմութեան մէջ որդիքդ չհասկանան, առաքինի հոգիդ չգնահատեն նորա, որոնց համար տքնում ու շնչում ես և դու վհատիս ու տանջանքներով լի ս. միայնութիւնդ թողնես, մոռանաս աղօթել և զուարճութիւնների ժխորի մէջ ուզենաս թափել քո ցաւդ, դու թէ և զաւակների տէր, բայց դու չես լաւ մայր։

Հայ քրիստոնեայ ընտանիքի օրիորդ, երբ ս. ամուսնութեան մէջ նախարարաց աչքով մատաղ կեանքի զարդեալ առաքինութիւններով պաշտպանես ընդդէմ օտարական զգացմունքների, միայնակ զգաս քեզ և միայնութիւնից անժամանակ նետուես կեանքի փոթորկուն պտոյտը, դու թէև օրիորդ, բայց չես քրիստոնեայ հայ օրիորդ. հաւատա ինձ, որ մետաքսի մէջ ծրարուած, զուարճութիւնների յորձանքներում պատուողների երջանկութիւնը հէնց առաջին մետաքսի հագուստի հետ կ'ը մաշուի և կեանքի մնացեալ տարիների համար կ'մնայ լոկ հիասթափութիւն և յուսահատութիւն։

Հա՛յ մայր, հա՛յ ժողովուրդ, երբ տեսնես թէ աշխարհը քեզ չի հասկանում, սուրբ ամուսնութիւնը ծանր թուի քեզ և դու փոխանակ հայ քրիստոնէի առաքինութեամբ տանջուելու և աղօթելու, աշխարհական պետերի մէջ թաղես քո յուսաբեկ գլուխը, վա՛յ քեզ, դու կ'մնաս կուցէ մայր, ժողովուրդ բայց ոչ երջանիկ մայր և ոչ հայ քրիստոնեայ ժողովուրդ։

Քրիստոնէական ս. միայնութեան մէջն է երջանկութեան և երկնքի թագաւորութեան առաջին քայլը. այդ միայնութիւնը սուրբ պահեցէք. աղօթեցէք և վստահ եղեք թէ ձեր արցունքոտ աչքերին յանկրման կ'գայ Երկնաւոր

Հայրը, որ ձեզ սիրտ կ'տայ, կ'քաջալերէ ու կ'քաղցրացնէ ձեր միայնութիւնը։

Ապաշխարութեան առաջին դասը թող ընտանելի ը. միայնութիւնը ըլլայ ձեզ համար, իսկ յաջորդ քարոզով եւ փորձութեան դար-պասը կ'բացխեմ։

---

*) Ծանօթութիւն. Խօսուած է 1904 թ. Մեծ Պահոց երկրորդ Կիրակիին Ձուշու Աղուլեաց Մայր Տաճարումն։

## Է.

## ՓՈՐՁՈՒԹԻՒՆ

„Որ յեսծ իմ տեսանեմ, զայրակցութիւն իմ ես":

Քրիստոնեայ Հայ եղբայրներ.

Ձրայմունքում լցուած է բնութեան լեզուն հասկացող, նորա գիրկն ամփոփուող մարդը. Հիանալի չէ՞ արդեօք, երբ տեսնում ես գլխիդ վերև փռուած մի անսահման կապուտակ, անջուր ծով, որի միջով ամէն օր իւր քնարանիցը վեր է կենում վարդագոյն արեւակը, շաղ է տալիս աշխարհի վերայ իւր ոսկեղէն վարսերը և լողալով երկնակամարի մէկ ծայրից միւսը՝ վերջապէս նորից իւր քնարանն է իջնում: Հիանալի է այն։ Բայց երկու կէտ կայ արևի ճանապարհի վերայ, երկու կայարան, որոնցում նա կատարեալ հրաշալիք է գործում. այդ նորա ելքն ու մուտքն է, երբ արևելք ու արևմուտք, երկնքի այդ ծայրերը՝ հրդեհով են բռնկւում և այդ բոցավառ հրդեհի մէջի միջից՝ ծնւում, կամ արևմուտքում մի բոցավառ [illegible] թաղւում է նա։ Այս երկու հրաշալի տեսարանի առաջ ծունկ են իջել, պաշտել են մէկ հին և մէկ նոր ազգերը։

Հիանալի է Փրկիչ Յիսուսի կարած ասպարէզն այս աշխարհի վերայ, Նորա կեանքը մարդկանց կեանքի մէջ. բայց հրաշալի է Նա իւր չարչարանաց կեանքի երկու կէտում, երկու կայարանում։ Դոքա են անապատի փորձութիւն և Գեթսեմանի պարտիզի արտասուալից աղօթքը չարչարանքից առաջ։ Աւետարանի և ոչ մի տեղում Նորա կատարեալ մարդկութիւնն ու կատարեալ Աստուածութիւնն այնպէս պայծառ չի երեւում իմ աչքում, ինչպէս փորձութեան անապատում, Գեթսեմանի տանջանաց և աղօթքի պարտէզում։

Իմ աստուածական ունկնդիրներ, հետեւեցէք ինձ հաւատի աչքով, ես ձեզ փորձութեան անապատը պիտի առաջնորդեմ, որ հրեշտակ Յիսուսին այնտեղ տեսնէք։

Յորդանանի մկրտութեան ջուրը ցօղում լուանում են Նորա մարմինը, իսկ հոգին, սիրտը, որ ջրով չի լուացւում, մաքրութեան է կարօտ, փորձութեան կրակի պէտք էր, որ վառէր այրէր Նորա հոգու մէջ մարդկային տկարութիւնը, խուլութիւնը և այնտեղ Աստուածամարդը յաղթական դրօշակով կանգնէր չարութեան առաջ։ Եւ ահա Նա իւր կամին է թողնում երանութեան սարի ծաղկափառ լանջը,

Գենեսարէթի ծովակի ծիծաղկոտ ափերը և գնում է անապատ։

Երիքովի արևմտեան կողմում, այրուած անապատի մի հարթութեան վերայ ցից ցից ժայռերով բարձր կանգնած է մինչև այսօր մի մերկ և անպտուղ լեռ։ Նորա ստորոտում մութ փայլով երեւում են մեռեալ ծովի դառնահամ ջրերը, ուր մի ժամանակ Սոդոմի քաղաքն էր լողում անօրէնութեան մէջ։ Այդ սարի, այդ ջրերի, այդ անապատի, լերկ ժայռերի վերայ կարծես երկնքի նզովքն է թափուել. մի տեղ որ յարմար է շատ ուխտեալների բնակութեան համար։ Ահա այդ սարն ընտրեց Փրկիչը իւր առանձնութեան, իւր աղօթքի համար, որպէս զի ս. միայնութեան մէջ իւր Սրբազան Առաքելութեան գործը կազմակերպէ։

Քառասուն օր Նա ոչինչ չկերաւ, ասում է ս. Աւետարանիչը և ապա քաղց զգաց։ Չէ այս պատրաստութիւն և ոչ կասկածելի զարմանք, երբ մարդու հոգին սաստիկ լարուած է, զգացմունքները փոփոխած, մարդ քաղց չի զգում։ Ուրիշ է այս, հասցրէք ամբողջ հոգու խորքում վշտաւոր մարդուն, որի միտքը կամքը, զգացմունքը ամբողջով միմիայն գերեզմանից չեն հեռանում. հասցրէք պատերազմի դաշտում վաղ առաւօտից մինչև արևի յետին շողը կռուող,

իր մարմնի հոսուն արիւնը չախսնող, վէրքերի ցաւը չ՛զգացող զինւորից, որ չգիտէ, քաղցն ինչ է։ Բայց.... բայց երբ հոգու ոյժն սպառւում է, սոսկալի է դառնում մարմնի պահանջը. այդ վայրկեանին քաղցածը իր կեանքը կ՛տայ մի կտոր հացի համար, ծարաւը՝ մի բաժակ ջրի համար։

Քառասուն օր հոգեկան սրտամաշ լարումից յետոյ Փրկիչը սաստիկ քաղցում է։ Այդ վայրկենից ահա օգտւում է սատանան ու գալիս է Նորան հաց առաջարկում. «Ի՞նչ անմիտ բան է մտքերի ալիքներով տարուբերւել, երկնքի թագաւորութեան խնդիրներով զբաղւել ու տանջւել. ահա այս քարերին թող հաց լինին, քեզ համար հաց պատրաստի կեր և մարմինդ պահիր»։ Աւանդութիւնն ասում է, որ փորձութեան սարի ցցւած ժայռերը Սողոմի օրերու քարացած հացերն են։ Սոսկալի քաղցի վերայ այս աւանդութեան յիշողութիւնն էլ յորդո-քում է Փրկչի երևակայութիւնը և բորբոքում քաղցի զգացմունքը։ Նա, որ Իսրայէլի քաղցած ժողովրդին մանանայով կերակրեց անապատում, Նա կարող էր անշուշտ և իր համար ուտելիք ճարել։ Բայց փորձութեան դէմ հացի գնով ուզում էր վսեմագոյն խոհերն ու արքայական գաղափարները մոռացնել տալ, մարմնի պահանջը

յառաջ մղելով, հոգու պահանջներն էր ուզում մեղմել: Ի՞նչպէս պէտք է ամօթահար անել չար ոգուն, երբ հացի գնով կամենայ մեր սիրտն ապականել, Փրկիչն իբրև մարդ սովորեցրեց մեզ չարին պատասխանելով. «Ո՛վ չար, միայն հացով չի ապրում մարդ, իսկական կեանք ունենալու համար Աստուծոյ խօսքն էլ պէտք է»: Ով չարութիւն. մարդը մարմնեղէն և հոգեղէն է, եթէ մարմինը հացի պահանջ ունի, հոգին էլ ասպարէզ ունի, միայն մարմինը պարարելով սիրտը երջանիկ չի լինի. երջանիկ են արդեօք ճոխութեան մէջ թաւալուող մարմնասէրները. բացէք նոցա կուրծք նոցա կուրծքը ու նոցա սև սիրտը տեսէք:

Այս առաջին փորձութիւնից ամօթահար չարը օգտուելով Փրկչի խօսքերից թէ Աստուծոյ խօսքերով կարելի է ապրել, կամեցաւ մոլորեցնել նորան հպարտութեամբ. «Հա՛, լաւ, եթէ Դու այդքան յոյս ես դնում Աստուծոյ վերայ, ուրեմն ցոյց տուր որ Դու Աստուծոյ որդին ես, ցոյց տուր որ յիրաւի Աստուած քեզ կ՛պահի, ընկիր այս բարձրութիւնից և թող հրեշտակները չթողնեն, որ քո ոտքդ քարին դիպչի»:—Գրուած է, ով չարագի, թէ ինչքան և արժանաւոր լինիս չ՛հպարտանաս, անձնապաստան չ՛լինիս ու չփորձես քո Տէր Աստուծուդ:

որք յաղթական վճիռը տուաւ նա Աստուած էր, սատանան իսկոյն չքացաւ և հրեշտակներն եկեցան ու սկսան պաշտել Նորան։

Հէնց այդ ժամանակ ապրում էր մի մարդ, որ Տէր էր ամբողջ աշխարհին. անսահման հարստութիւն, անսահման իշխանութիւն, անսահման զուարճութիւններ, ահա այն դէտերն, որոց մէջ լողանում էր ամէն օր Հռոմի հզօր կայսրը Տիբերիոս։ Փորձող սատանան յաղթանակ էր տարել նորա վերայ. բայց երջանիկ էր նա։ Պատմիչն ասում է, թէ ամենատխուր և ամենաթշուառ մարդն էր. իսկ ինքը մեկուսութեան, անձնահաճ մոլի զուարճութեանց ծոցից գրում էր իւր ապականուած ծերակուտին «Ո՜հ թող Աստուածները ինձ մահապատիժից ոչնչացնեն, աւելի հանգիստ կ'լինիմ քան թէ այժմ. ես ամէն օր զգում եմ որ քայքայւում և աւելի եմ թշուառանում»։

Փրկչի անուան կողքին յիշեցի չարութեան այս երկրպագուին, որպէս զի փորձութեան գաղափարը պայծառ լինի։

Այո, քրիստոնեայ հայ եղբայրներ, Փրկչի տուած փորձութեան դասը ձեր առջևն է. քրիստոնէի թակական նշանակութիւնը հէնց նորանումն է, որ օգտուի աւետարանական դասերից։

Ոչ ոք իւր կեանքի մէջ ազատ չէ փոր-

ձուլթիւնից և՝ մանուկ և՝ աշակերտ և՝ մարդ և՝ կին և օրիորդ և քահանայ. ամէնքի սրտի դուռն էլ բաղխում է սատանան, փորձութեան այս դևը:

Երևի կ'հարցնէք, ուր է սատանան; ով է տեսել սատանային. Ես ոչ տեսել եմ և ոչ էլ տեսնողներից եմ լսել Նորա նկարագիրը. բայց Նորա ազդեցութիւնը և՝ ինձ և՝ ամէնքիդ յայտնի է.

Ես խորապէս համոզուած եմ թէ Աստուած մարդուն կատարելութեան հասցնելու համար Նորա կրծքի մէջ մի կռուի դաշտ է սահմանել. կռուողները մարմնի և հոգու պահանջներն են, չար ու բարի հակումները: Բարի հակումները մարմնանում են մարդու երևակայութեան մէջ հրեշտակի կերպարանքով, չարերը՝ սատանայի: Պատերազմը հաշտութեամբ չի վերջանում. կռուողներից մէկը անշուշտ պիտի յաղթէ, երկուքի համար բնակութեան տեղ չկայ մարդու կրծքում. (Ոչ կարէք ծառայել Աստուծոյ և մամոնայի). յաղթում է բարին, հեռանում մարդու սրտից չարը իւր իշխանական աթոռը թողնելով մարդու կրծքում խաղաղութեան հեղեղ է կապում այնտեղ: Պարտուում է չարը, բարու հրեշտակը պահպանում է առաքինի մարդու սիրտը և երանութեան բաղձը խաղաղ երջանկութեամբ լցնում մարդու կուրծքը:

Սակայն չար խոհերը մի կամ միւստեսակ

չեն, այս պատճառով և չար սատանան գանապան կերպարանքով է երևում։ Փրկչի ցույց տուած օրինակով, չար ոգը չարիք է գործել տալիս նախ՝ հացի գնով. երբ մարմինը հաց ունի փառքի է ձգտում, այս դէպքում փորձիչը փառասիրութեան զգացմունքով է մօտենում. երբ այս պահանջն էլ լրացած է՝ ապահութեան և զուարճասիրութեան պատկերով։

Եթէ մէկն ասի թէ երբէք փորձող չար հակումով չի ալեկոծուել՝ սուտ է ասում. բոլոր սրբերից սկսած մինչև յետին մարդը փորձութեան ենթակայ են, գայթակղութեան են ենթարկուում. առաքինութեան յաղթանակը միայն այս է, որ մարդ կարող լինի չար հակումը խեղդել իւր մէջ, թոյլ չտայ որ գործ դառնայ։

Արդ՝, եթէ դու վաճառական ես և ուզում ես փող դիզել, քո փորձիչը կերևայ քեզ ամենահարուստ վաճառականի ձևով, կը սովորեցնէ քեզ հաշիւ կեղծել, խաբել, առել որբի և այրու կայքը սեփականել այլոց թշուառութեամբն յաջենալ. եթէ դու առաքինի վաճառական ես պատասխանիր. «Ե՛րթ յետս իմ սատանայ»։

Եթէ դու քահանայ ես, քո փորձիչդ կը մօտենայ քեզ իբրև մի անհաւատ, շողոքորթող, որ անքաւ հարստութիւն է դիզել. կ՛ուզէ քո հաւատդ ճշմարտախօսութիւնդ սրտիցդ

հանել և տեղն արծաթ դնել. եթէ դու, առաքինի քահանայ ես պատասխանիր. «Երթ յետս իմ սատանայ»։

Եթէ դու փառասէր ես, փորձիչդ կ՚գայ նախանձից ատամ կրճտելով քեզնից առաւել արժանաւորի դէմ, կ՚սովորեցնէ ատամներով պատռել նորան, լեզուով թունաւորել, որ դու միայն մնաս ու շնորհալու կայքին անշնհարք չերևաս. եթէ դու առաքինի ես պատասխանիր. «Երթ՛ յետս իմ սատանայ»։

Եթէ դու հայ տիկին ես, քո փորձիչդ կ՚գայ ատամանդներով ցողուած. կերպասներով ծրարուած կնոջ կերպարանքով և կուզէ զարդարանքների գնով մոռացնել տալ քեզ այն, ինչ որ կնոջ կոչման ծաղիկն է կոչւում. եթէ դու, առաքինի հայ տիկին ես, պատասխանիր. «Երթ յետս իմ սատանայ»։

Եթէ դու հայ օրիորդ ես, քո փորձիչդ կ՚գայ գեղեցիկ երիտասարդի կերպարանքով, շրթունքների վերայ հրապոյրի կեղծ ժպիտը ցանուած. զգոյշ, մի շտապիր. եթէ դու առաքինի օրիորդ ես պատասխանիր «Եր՛թ յետս իմ սատանայ»։

Եթէ դու ժողովուրդների մէջ ժողովուրդ՚մ ես և մի խղճուկ անկիւն ունիս ապրելու, ուր քեզ համար սիրելի յիշատակներ, խեղճ ու ար-

ցունք է պահուած, քո փորձիչդ հ՛կայ ճոխ, սերճ ազգի օրինակով, որ մոռացնել տայ քեզ քոնը. զգո՛յշ, քո արցունքն ու վիշտ առաւել սիրէ, քան օտարի խնճոյք, որ քեզ համար երջանկութիւն չի բերի. եթէ դու առաքինի ազգ ես, պատասխանիր. «Երթ յետս իմ սատանայ»։

Այն Աստուածը, որ փորձութեան կարիք չունէր, բայց փորձուեց, որ մեզ սովորեցնէ թէ ինչպէս պէտքէ չարին յաղթել. Նա որ փորձութեան մէջ եղած հերոսներին զօրանալու և յաղթահարելու ոյժ է պարգևում, Նա թող ոյժ տայ և մեզ դէմ դնելու փորձող դևին և քաջութեամբ պատասխանելու. «Երթ յետս իմ, սատանայ։*)

---

*) Ծանօթութիւն։ Խօսուած է 1901 թ. մեծի պահոց երրորդ կիւրակէին Շուշւոյ Ղազանչեցոց եկեղեցում։

# Բ.

## ԽՄԱՍՏՈՒՆ ԱՆԻՐԱՒՈՒԹԻՒՆ ԵՒ ՓՈՔՐ ԲԱՆԻ ՄԷՋ ՀԱՒԱՏԱՐՄՈՒԹԻՒՆ.

„Եւ գովեաց տէր զտնտեսն անիրաւութեան... Որ ի փոքուն հաւատարիմ է եւ ի բազմին հաւատարիմ է, որ ի փոքուն անիրաւ է եւ ի բազմին անիրաւ է.“
Ղուկ ժ. Զ.

Քրիստոնեայ հայ եղբայրներ.

Պատահել է ձեզ որ սարի լանջումը ծաղիկներ ջոկելիս փունջ կազմելու համար դըժուարանաք ընտրութիւն անել. որը քաղեմ, որն է սիրուն, որի հոտն առաւել անուշ է, տեսքը հրապուրիչ։ Ամէնքն էլ իրենց տեսակի մէջ գեղեցիկ են, ամէնքն էլ հոտաւէտ, ամէնքն էլ երեսիդ ժպտայող ու պիտանի սիրունիկ փնջի համար և դու ընտրութեանդ մէջ հիացմամբ շուարում կանգնում ես։ Ճիշտ այդպէս հիացմունքով շուարել կանգնել էի, երբ այսօր սրբազան բեմից հայր քահանան ս. աւետարանի ժամկարանից երկնքի մարգարիտներ էր վաճառում. որն է լաւ, տնտեսի առակը թէ հրաշքները. պարտքերի մէջ հաւատարիմ լինելունը թէ Ղազարոսինը։ Ես հիացմունքով շուարած, ձեռքս մեկնեցի դէպի

երկնքի մարգարիտների վաճառականը ու սիրոյ թելի վրայ շարած երկու անբաժան մարգարիտ ստացայ, որոնց անունն է իմաստութիւն և փոքր բանի մէջ հաւատարմութիւն։ Իմ գընած մարգարիտները ծրարուած են երկնագոյն հանդերձանքի մէջ որի վերայ գրուած է, «Տընտեսի առակը»։

Իմ պատուական ունկնդիրներ, ես ուզում եմ այդ հանդերձանքի հանդոյցն արձակել որ դուք էլ երկնքի մարգարիտները տեսնէք ու սիրէք նոցա։ Բայց ծանրալեզու եմ ես, ինձ դժուար է հասկանալ. իմ թերութիւնը ծածկելու համար կաղաչեմ ձեր ուշադրութիւնն աւելացնէք։

Մարգարէների օրերը թևաւորուելով թռել գնացել էին Հրէաստանից ու իրենց թևերով տարել ճշմարիտ հաւատը, սրտի մաքուր կրօնը. Մովսէսի աթոռի վերայ նստել էին դպիրները ու փարիսեցիները. սոքա էին ժողովրդի կըրթութեան, հաւատի պահպանութեան եկեղեցական ու աշխարհական առաջնորդները։ Տաճարի երկրպագութիւնն էլի կար, հաւատն էր պակսել. աղօթքի բուրվառը կար՝ աղօթքն էր պակսել. Տիրոջ օրէնքը կար՝ սէրն էր պակսել. գթութեան քարոզը կար՝ որբի և այրու հացն էր պակսել... մէկ խօսքով Աստուածպաշտութեան ձևը կար՝ ծաղիկն էր պակսել։

Ամէնքի սրտում խիղճը քնած՝ արծաթն էր խօսում. Հրեշտակը լալիս՝ չար դևն էր խնդում. սէրը կրծքի մէջ դագաղում դրած՝ ատելութիւնը նրա վերայ հոգոց էր կարդում։

Այս վիճակում ուժեղն անզօրին ճնշելով հանում է նորանից կենդանական կրակը, մատնում ցուրտ աղքատութեան ու տառապանքի և այս անիրաւութիւնը ձևական կանոնով սրբագործում. մէկ խօսքով մամոնայի հզօր և անհաւատ թագաւորութիւն։

Այս սոսկալի անիրաւութեան դէմ բողոքող մի հրաշալի ձայն առաջին անգամ հնչում է Գալիլիայի բարձունքներում, անցնում է շատ քաղաքներով, մտնում Երուսաղէմի տաճարը և նորա կամարների տակ այսպիսի արձագանք տալիս. «Տիրոջ հոգին ինձ վերայ է, ուստի և ինձ օծել է. ուղարկել է աղքատներին աւետիք տալու, ցաւած սրտերը բժշկելու, գերիներին թողութիւն քարոզելու, կոյրերին աչքի լոյս տալու, սպաւորներին մխիթարելու»։ Բայց ով է աղքատացրել աղքատին, ով է վիրաւորել խեղճերի սիրտը, ով է գերել այսքան մարդուն, ով է կուրացրել շատերին, ով է ողբի մոխիր ցանել շատ տների վերայ. անհաւատ անխղճութիւնը, նիւթապաշտ ագահութիւնը, կոյր և սնափառ ապիրատութիւնը։ Հրէաստանում հա-

ւասարութեան վարդը թոշնել էր. սակաւա-մասն ուժեղների ձեռքում տանջւում էր թըշ-ուառների բազմութիւնը։ Ուստի բնական է թէ ովքեր պիտի հալածէին Փրկչին և ովք պիտի աշակերտէին Նորան։

Գալիլիայ և Երուսաղէմի դռները փակւում են Նորա առաջ և Նա իւր քայլերն ուղղում է դէպի Յորդանանի ափերը. Նորան հետեւում են վաստակաւորներն ու բեռնաւորները, աղքատ-ներն ու զղջացող մեղաւորները, մտքով կոյրերն ու կաղերը, որոնց համար աշխարհը մթին է, մթին է և Աստուծոյ թագաւորութիւնը և առաջնորդի են կարօտ։

Փրկչին հալածող մեծատունները իրենց սրտի մէջ խոստովանում են, որ Նորա ասած-ները բարձր են, իմաստալից են, օրէնքին, ս. Գրքին համաձայն են, ուստի հետաքրքիր են լսելու և շատ անգամ իրենց տներն են հրա-ւիրում Նրան հացի և բազմութեան առաջ խօ-սեցնում. նախ՝ որ բան սովորեն, երկրորդ նախանձով և շահամոլութեամբ լցուած աշխա-տեն ս. Գրքին ընդդէմ խօսք բռնել և Նորա վարկը քցել ժողովրդի մէջ։

Ահա այդ դիտաւորութեամբ Յորդանանի կողմերում մի փարիսեցի հրաւէրք է սարքում, կանչում է Փրկչին և Նորա առաքեալներին. կան

և ուրիշ փարիսեցիք։ Փրկիչն օգտուելով հանգամանքից անմիտ նիւթապաշտութեանը, մեծամտութեանն ու անհաւատարմութեանը մի զօրեղ հարուած է տալիս տնտեսի առակով։ Ահա այդ առակը։

Մի մեծատան՝ հարուստ մարդ մի տընտես ունէր. տնտեսին ամբաստանեցին տիրոջ առաջ որ նա վատնում է նորա կարողութիւնը. տէրը կանչեց և ասաց նորան. էս ինչ բան է որ լսում եմ քո մասին, տնտեսութեանդ հաշիւները տուր, էլ չես կարող տնտես լինել։ Տընտեսը մտքի մէջ է ընկնում. ինչ պիտի անեմ, տէրս տնտեսութիւնից հանում է ինձ, ուրիշ գործ կատարել չեմ կարող, մուրացկանութիւն անելն էլ ամօթ է։ Հա՜, գիտեմ ինչ անեմ, որ պաշտօնազուրկ լինելուցս յետոյ ինձ իրենց տուն ընդունողներ լինին։ Եւ մէկ մէկ իւր մօտ կանչելով տիրոջ պարտապաններին ասում է առաջնին. իմ տիրոջն ինչ ես պարտական.— Նա պատասխանում՝ է հարիւր չափ ձէթ.— Թուղթ վերցուր և գրիր շուտով յիսուն։ Միւսին հարցնում է՝ դու ինչ ես պարտ.—Հարիւր չափ ցորեն.—Թուղթ վերցուր ու գրիր ութսուն։ Տէրը որ այս բանը իմացաւ գովեց անիրաւ տնտեսին, որովհետև իմաստուն բան արաւ։

«Եւ գովեաց Տէր զտնտեսն անիրաւութեան, զի իմաստութեամբ արար»։

Զարմանք, ինչպէս կարող էր անիրաւ, գող տնտեսին գովել տէրը և եթէ գովում է, ինչպէս կարող էր արձակել պաշտօնից. Հակասութիւն չէ՞ այս. սխալ չէ՞ այս. Բայց ո՛չ. Հասկանալ պէտք է միայն։ Տէրը չի գովում տընտեսի անիրաւութիւնը, այլ գովում է նորա իմաստութիւնը, որ մամոնայի գնով բարեկամ ճարեց։ Բարեկամի տունը, յարկը շատ աւելի լաւ է, քան մամոնան։ Բարեկամ կարող են լինել բարիք սեռած մարդիկ, բարեկամ կարող են լինել բարի գործերը, որոնց մէջ մարդ հոգեկան երջանկութիւն վայելել կարող է և տնտեսը տալիս է մամոնան ու բարեկամ ճարում։

Այսպէս չեն վարւում աշխարհիս յիմարները, որոնք և՛ բարեկամութիւն և՛ բարի անուն, և՛ բարի յիշատակ տալիս են որ մամոնայ գնեն։

Արդ՝ եթէ իմաստութիւն է մամոնան տալ և աշխարհիս վերայ բարեկամ ճարել, բարեկամի յարկ ճարել, ուր մարդ կարող լինի հանգիստ առնել, որչափ աւելի մեծ իմաստութիւն է այս աշխարհիս սեփականութեան վերայ նայել իբրև անցողական ժամանակաւոր մամոնայի վերայ, որով կարելի է բարեկամ ունենալ երկնքում Աստուած, բարեկամի տուն՝

յաւիտենական թագաւորութիւն: Ահա տնտեսի առակի առաջին իմաստը։

Այս դաղափարն առաւել պարզ կացուցանելու. համար մի փոքրիկ պատմութիւն անեմ։

Մերձ ի մահ հիւանդ մի ծերունի հայր հոգին աւանդելուց առաջ այսպիսի մի խրատ է տալիս որդուն. «Որդի, լսիր իմ խրատը, ամէն մի քաղաքում ուր գնաս մի տուն շինիր և դու երջանիկ կ՚լինես»։ Զարմանում է որդին. շատ են այդ քաղաքները, ուր գնալ գալ ունի, ինչպէ՞ս կարող է ամէն գնացած տեղը մի տուն շինել։ Տարակուսած որդուն հասկանալի անելու համար մեկնում է հայրը. «Խօսքս, որդի, շէնքերի մասին չէ, այլ ուր որ գնաս, աշխատիր լաւութիւն անես, որպէսզի ուր էլ լինես այնպէս ընդունեն քեզ ինչպէս քո տանը»։ Ուրիշ խօսքով մարդկանց սիրտը տալ մարդ և բարեկամ ու բարի դարձ շահիր։

Իւրաքանչիւր քահանայ իւր տաճարի մէջ, իւրաքանչիւր մարդ իւր տան մէջ, իւրաքանչիւր կին իւր զաւակաց շրջանում, իւրաքանչիւր ուսուցիչ իւր սանիկների համար տնտես մ՚է։ Ամէնքն էլ իրենց սեփականութիւնից պէտք օգտուեն ինչպէս ճանապարհորդը կշտացնում է իւր ծարաւը պատահող աղբիւրից

ու անցնում և երբէք սեփականութեան գոհ չըն-
քեն առաքինութիւնը, երկնքի թագաւորու-
թիւնը, որ մշտական է, յարատև է, յաւիտե-
նական է. ընդհակառակն Աստուծոյ տուած
բարձրագոյն շնորհները, բարին, գեղեցիկը, ճըշ-
մարտութիւնը ոտքէ կոխ դնեն այլոց համար
ու չգողնան, չժառանգնեն։

Տնտեսի այդ խմաստութիւնը գովելով հան-
դերձ Փրկիչն աւելացնում է տնտեսին. «Տուր
զհամար տնտեսութեան քո, զի ոչ ևս կարես
լինել տնտես»։ Ես քեզ յանձնել եմ իմ կարո-
ղութիւնս կառավարելու, իմ ժամանակն քեզ եմ
տուել և դու, որ այդ փոքր, անցողական բա-
նում անհաւատարիմ ես գտնուել, ինչպէս կա-
րող ես հաւատարիմ մնալ ինձ, ես քեզ աւելի
բարձր գործեր, բարձր ճշմարտութիւններ հա-
ւատամ։ Չէ, չէ, տնտեսութեանդ հաշիւները
տուր, որովհետև ով որ փոքր բանի մէջ ազ-
նիւ է, նա միայն մեծ բանի մէջ ազնիւ կ՚լինի,
և ով որ փոքր բանի մէջ անիրաւ է, մեծ
բանի մէջն էլ անիրաւ կ՚լինի»։

Բայց միթէ մանր բաների մէջ հաւատա-
րիմ ազնիւ չեղողը, չի կարող ազնիւ լինել,
հաւատարիմ լինել մեծ բաների մէջ. սխալ չէ
այս։ Ահա, սխալը մենք ենք աւետարանի
ծաղկաւէտ դաշտերից հեռու շրջող այգեպանք-

ներս, որ կարծումենք թէ աւետարանի մէջ սխալ բան կայ. մենք անիմաստ իմաստունները, որ կարծումենք թէ մանր պարտքերի դէմ աչք փակելով, մեծ պարտքերի մէջ հաւատարիմ և ազնիւ կ՚լինենք. մենք՝ կամազուրկ փոքրիկները, որ փոքրիկ պայթակցութիւններին չդիմանալով, կարծումենք թէ մեծերին կ՚յաղթենք։ Փոքրիկ մարդկանց մեծ մոլորութիւն։

Դու, աշակերտ եղբայր, ազնիւ պատանի, երախտագիտութեան առաքինութիւնը քո սըր-տումդ աճել ծառ է դարձել. դա քո իդէալն է։ Երբ հայր քահանան մատնութեան գիշերուայ ապերախտութիւնն է պատմում, որ Յուդայի համբոյրով դրոշմուեցաւ երկնաւոր վարժապետի լուսաշաղ դէմքին, ճակատդ կնճռոտում, պայ-թոյթի մի որոտացող ամպ է պատում հոգիդ. ահ, գովում եմ ազնիւ իդէալդ, ազնիւ ձըգ-տումդ։ Բայց ահա մի փոքրիկ երախտագիտու-թեան կարօտ գործ. քո ալեզարդ ուսուցիչդ, որի ոգևորութեան տարիները քո զարգացման վերայ մաշուեցաւ, կարօտ է լոկ քո յարգան-քին. աշխարհը նորան չի ճանաչում, բայց դու ճանաչում ես. նորա մաշուած սիրտը մի խո-ցիր վատաբանող ապերախտ լեզուիդ սուր նըշ-տարով։ Ո՛հ . . . ինչու կախ ընկաւ խրոխտ ճակատդ, դժուա՞ր է, խօսքի տէրս, գործի

պաճաճ. «որ ի փոքուն անիրաւ է, և ի բազմին անիրաւ է»։

Դու, ուսում առած երիտասարդ եղբայր, սրտիդ մէջ հաւատարմութեան, փոխադարձ օգնականութեան իդէալն ունիս. երբ դու ոգևորւում ես հերոսական դարերով, երբ հերոս մարդիկ իրենց ինչքն ու կեանքը զոհ էին բերում եղբայրական հաւատարմութեան ս. սեղանի վերայ, ես քեզ սիրում եմ, սիրում եմ քո պապակդ քո կրակն և իմ կուրծքն է վառում։ Բայց ահա մի փոքրիկ օգնականութիւն. դըռանդ կանգնած է մի խեղճ աղքատ գիւղացի, քեզնից ոչինչ չի ուզում, այլ մի բարի խորհուրդ իւր որդու կրթութեան համար. յիշում ես, դու էլ մէկ օր գեղջուկ հօրդ հետ քեզ նմանների դռներում կանգնած էիր։ Բայց . . . դու շտապում ես. ա՜, ճաշի՜ ես հրաւիրուած, ուր փափկասուն օրիորդների շրջանում մարդասիրական ճառեր պիտի ասես։ Աստուած քեզ հետ, խօսքի հերոս, գործի պաճաճ, «որ ի սակաւուն անիրաւ է և ի բազմին անիրաւ է»։

Ողջոյն քեզ, հարուստ մեծատուն եղբայր, ես չեմ մոռացել այն օրը, երբ դու անիրաւ մեծատան և աղքատ Ղազարոսի առակը լսեցիր. ողորմած հոգիդ վրդովուեց, անիրաւ մեծատան քարասրտութիւնը քո աչքերդ արցուն-

քով լցրին։ Դիտեմ մեծամեծ ազատութիւն անելու պատրաստ ես. բայց դու այժմ քո գրպանը մի քանի մանրիկ բակլան ու պլպլայ, գլաղաւրիկ ու քաղցած Ղազարաններ կան, եկ, նոցա արցունքը սրբէ. այս փոքրիկ ազատութիւնն արա, մինչև որ դէպքը բերի մեծն էլ կանես։ Բայց . . . ինչու ես զայրացած աչքերդ սևեռում վերաս. մեղա՜, թողութիւն արա. Ես չիմացայ թէ զբաղուած ես, չիմացայ որ ոսկիներդ ես համարում սնդուկներում դարսելու համար։ Համրէ, ոսկի համրէ, խօսքի հերոս, գործի պաճաճ, բայց իմացիր, «որ ի փոքուն անիրաւ է, և ի բազմին անիրաւ է»։

Գլխարկ հանած եմ ողջունում քեզ, քաջ իմ շնորհալի հայ օրիորդ, որովհետև սրտիդ մէջ երկրպագութեան մէկ սեղան ես շինել, նորա վերայ կուսական համեստութիւն և մաքրութիւնն ես բարձրացուցել ու երկրպագութիւն ես տալիս. քո իդէալը կուսական առաքինութեանց հովանաւոր Ս. Գայեն է։ Գիտեմ աշխարհքս և ոչ մի մարդիկ չի կարող թարշամել քո մաքուր կենցաղից ծաղիկը։ Բայց ահա քո աղքատիկ քոյրերից մէկը ձեր դռանն է, որբուհին վիշտ ունի, սփոփանքի է կարօտ։ Բայց.., բայց ինչու ես արհամարհում ինձ. մի՞թէ, յան-

ցանք գործեցի, ա՛խ, թողութիւն տուր, չէի իմանում թէ այդպէս աղջիկների հետ խօսելն անպատուութիւն է քեզ համար, չէի իմանում որ մեռածի հագուստ ու կարգեր ես ուզում, որ մութ փողոցում անտէրութեան գնաս . . . Ներող եղիր խօսքի Տէրոջ, գործի պաճաճ «որ ի սակաւուն անիրաւ է, և ի բազմին անիրաւ է»։

Դուն էլ մեծ յարգանքի արժանի ես քրիստոնեայ պատուական տիկին, որովհետև դուն էլ մեծ իղձերով ես ապրում։ Քրիստոնէական ճշմարիտ հաւատը սրբակեաց կանանց սըրտումն է պահուել. գիտեմ, աւետարանի հաւատով Մարիամների պատմութիւնը սիրտդ յուզում է. դուն էլ կուզէիր մի շիշ Նարդոսի թանգ իւղ թափել Փրկչի ոտների վրայ օծել և վարսերովդ սրբել. հաւանած է.. քո իղձը։ Բայց ահա ժամը զարկաւ, խնկան երկնագոյն ծուխն ու աղօթքը զանգի ձայնի հետ միասին դէպի Բարձրեալի աթոռն են ելնում. շտապիր, գնա ժամ, զաւակներիդ և աշխարհի տառապեալների համար աղօթէ։ Բայց . . . բայց դու աղօթելու ժամանակ չունիս, հարսնիք պիտի գնաս։ Բարի ուրախութիւն, խօսքի Տէրս, գործի պաճաճ «որ ի փոքուն անիրաւ է և ի բազմին անիրաւ է»։ . . . . . . .

Օրհնեա՛ ի Տէր, աջիդ մեռնիմ, հայր քա-

հանայ. յիշում եմ թէ ինչպէս լաց եղար, երբ մէկ օր նկարագրեցիր Փրկիչ Յիսուսին Երեքովի պայտալի քով թափթփած կոյրերի, կաղերի, բորոտների մէջ, մխիթարութեան սպեղանի դնելիս նոցա վիրաւոր սրտին։ Բայց ահա այդքան խղճուկին մէկը քո դռանդ ընկաւ ու մեռաւ. երկու մանրիկ որբերը հօր դիակի վրայ ընկած յուսակտուր կ'հեծկլտան, մեր կայ մխիթարիչ հայր, տար խղճուկին քրիստոնէի կարգով հողը դիր ու որբերին մխիթարիր։ Բայց . . . արժանի եմ ես քո բարկութեան, հայր հոգևոր. ներողութիւն արա. ես չգիտէի թէ հարստի տուն հարսանիքի հաց ուտելու կերթաս։ Բարով երթաս խօսքի հերոս պարծի գաճաճ, բայց ամենից լաւ դու պիտի իմանաս թէ «որ ի փոքուն անիրաւ է և 'ի բազմին անիրաւ է»։

Աստուած օրհնակյան, հայր վարդապետ, կարդիկ մեռնիմ քինչ վսեմ իդէալ ունիս, Պօղոս առաքեալ. նա շրջում է քաղաքներ, նա տիրոջ խօսքն է քարոզում, նորան հալածում են ճշմարտութեան համար, կզլինեն աքսորում, բանտերում կաշկանդում. բայց նա բանդերիցն անվամ մխիթարական թղթեր է գրում իւր հօտին, պաշտպանում է նոցա հեթանոսութեան գայլերից։ Դուն էլ այդ մեծ սուրբի գործերամն

ես ոգեւորւում։ Բայց ահա, հայր սուրբ, քրիստոնեայ աշխարհներդ մօտիկ սարի փեշում հանգիստ արածում էին, կարծելով թէ դու իրենց մէջն ես. սարից գայլեր իջան, մոլորուած աշխարհն աղիողորմ ձայնով մէկ այս, մէկ այն կողմն է վազում, չգիտէ ուր դիմէ, չգիտէ դուռն ուր է։ Վեր կաց, քաջ հովիւ ու հօտդ թող չուրջդ խմբուի, ազատէ նոցա։ Բայց... բայց ինչու աչքերդ ցասումով վար թողեցիր. ինչու՞ լիք լիք երեսիդ վարդերը դեղնեցան բարկութիւնից. մեղա՜, հայր սուրբ, ես չէի իմանում թէ, ճաշիդ ժամանակն է։ Այո՛, դու պէտքէ նախ կաքաւ ուտես, կարմիր գինի խմես ու անույշ քնես, ժամանակ չունիս։ Քնի՛ր, անույշ լինի քունդ, հայր առաքեալ. թող վարանած հօտն սպասէ. գայլերը խօ չե՞ն կարող բոլորին ուտել..... բայց քաջ իմացիր, «որ ի փոքրուն անիրաւ է և ի բազմին անիրաւ է։»

Տէ՛ր Աստուած, այս ինչ վէրք էր որ բացի ես իմ հոգու մէջ. մի՞թէ «ամենեքեան խոտորեցան ի միասին և անպիտանացան», մի՞թէ ամենեքեան. այո՛, այո՛, ամենեքեան։ Ամէնքն էլ խօսքի մէջ հերոսներ են, գեղեցիկ իդէալների տէր, իսկ փոքր պարտականութիւններն երբէք չեն կատարում։ Ինչպէս կարելի է, հաւատալ, որ փոքրիկ ցաւին չդիմացողը, տան-

ջանքի կ՚դիմանայ, մի լուման օգնութիւն չտըւողը, իւր կեանքը պահ կտայ։ Ո՛չ, ով որ փոքր բաների մէջ հաւատարիմ է մեծ բաների մէջն էլ հաւատարիմ կ՚լինի. ով որ փոքր բաների մէջ անիրաւ է, մեծ բաների մէջն էլ անիրաւ կ՚լինի։ Մեծութիւնը մարդկային մանր պարտականութիւնների գումարն է. ամենամեծ ու սուրբ մարդիկ նոքա են, որոնք իրենց մանր պարտքերն են կատարել։ Մանր պարտքերն աւազի հատիկներ են, որոց բազմութիւնը ծովի ալիքների առաջն է առնում և նոցա յետ է դարձնում։

Արդ՛, իմ ունկնդիրներ, հասկանալի պիտի լինի ձեզ թէ տնտեսի առակն ինչ միտք ունի. մարդ այնքան իմաստուն պիտի լինի, որ մամոնայի գնով բարեկամ և երկինք ժառանգէ, չկաշկանդուի նիւթապաշտութեամբ և եթէ մարդ իւր մանր պարտքերը լաւ չկատարէ, այլ միայն քրիստոնէական հզօր առաքինութեանց առաջ յուզուի, խիղճը միայն ցնորք դառնայ և ոչ գործ, նա երբէք չի կարող մեծ ճշմարտութիւնների մէջ հաւատարիմ լինել. նա չի կարող Աստուծուն ծառայել, այլ կ՚մնայ նոյն մամոնայի պաճաճ երկրպագուն։

Քաջալերուեցէք, ով քրիստոնեայք, մօտ է Աստուծոյ արքայութիւնը. շուտով պարծենկոտ

մեծախօսները կնսեմանան, հանդէս կ'գան իրենց բոլոր մերկութեամբ, իսկ համեստ, հեզ անձնուէրները իրենց մանր պարտականութիւններին՝ բարձր ի գլուխ կ'կանգնեն Աստուծոյ առաջ։ Իսկ մինչև այդ փառաւոր օրը սրտագին աղօթելու է ս. Շնորհալու մեղմիկ աւաղով. «Զօրութիւ Տէր յօգնել, վարթմ գլծմրեալս, զը-ւարթնոց նմանել» և մեր հայրերի Աստուածը թող զարթեցնէ մեր սիրտը, մամոնայի և հպարտութեան փոշուց թեթևացնէ մեր հոգին, որ հասկանանք թէ մանր պարտականութիւնների մէջն է քրիստոնէի մեծութիւնը. «Զի որ ի փոքուն հաւատարիմ է և ի բազմին հաւատարիմ է»։*)

*) Ծանօթ. Խօսուած է 1901 թ. Մեծի պահոց առաջին կիւրակէին Շուշու Մեղրեցոց ս. Աստուածածնի եկեղեցում։

## Թ,

## Վ Ա՜ Ց   Չ Ե Ջ

Քրիստոնեայ Հայ եղբայրներ.

Եղե՞լ էք դուք երբ և իցէ արդարադատութեան մեծ ատեաններում. ընդարձակ դահլիճի մէջ տեղաւորուած է հարիւրաւոր բազմութիւն. դահլիճի ճակատին դատաւորի աթոռն, նորա առջի գլխիկոր կանգնած մեղապարտը։ Արդար բարկութեամբ լցուած դատաւորը յանցագործի մեղքերը նորա երեսովն է տալիս և դատակնիքն է կարդում։ Դուք անիրաւ արարքների նկարագրութիւնից փշաքաղուում էք. դատավճիռը ձեզ սոսկումն է ազդում։

Ճիշտ այս բնաւորութիւնն ունի այսօրուան ս. Աւետարանը. իմ երևակայութեան առջի կենդանանում է աւետարանի այդ պատկերը։ Կանգնած է Փրկիչը ահեղ դատաւորի նման, կարծես այն հեզ, քաղցր վարդապետը չ'լինի. Նորա առաջ փարիսեցիների և դպիրների մի մեծ բազմութիւն, կեղծ գիտնականների, կեղծ կրօնաւորների մի ժողով։ Երեք տարի շարունակ սիրոյ և ճշմարտութեան անոյշ լեզուով քարոզել էր դոցա. բայց կեղծիքի և

անիրաւութեան մէջ փէտացած ժողովուրդն անուղղա էր մնացել. ուստի այժմ նա դժուութիւնը մի կողմ դրած արդարութեան խարազան ձեռքին անխնայ մտրակում էր սուտն ու կեղծիքը։ Այդ դատաստանը յայտնի է ս. Աւետարանի մէջ «վայե՛ր», կամ «մեծ յանդիմանութիւն» անունով։

Արդ՛, ի՞նչ է սուտը և ինչ է կեղծիքը։ Սուտ կնշանակէ այնպիսի բան խօսել, որ եղած չէ ամենևին, որ սարքուած է. և ովք են ստողները. ստում են անշնորհքները՝ շնորհալի երևալու համար, ստում են վախկոտ անձնասէրները, որ անվախ հերոս երևան. ստում են ծոյլերը, որովհետև աշխատանքով ապրել չկարողանալով միայն այդ ճանապարհով են հաց վաստակում։ Սուտի վերջնական նպատակն է խաբել. իսկ երբ սուտը յաճախ է կրկնւում, դառնում է բարք, որից այլևս բաժանուել չի կարողանում ստախօսը։

Կեղծելը ստից փոքր ինչ տարբեր մոլութիւն է. կեղծել նշանակում է չերևալ այնպէս ինչպէս որ կաս, այլ ձևանալ այնպէս ինչպէս որ չկաս։ Օրինակ՝ երբ սրտիդ մէջ ատում ես աղքատներին և չես ուզում նոցա հանդիպել անգամ, և երբ ուրիշների մօտ ցոյց ես տալիս քեզ աղքատասէր, դու կեղծում ես։ Երբ սրտիդ

մէջ սէրը, հաւատը յոյսը մեռած է, բայց դու աղօթող ես ձեւանում, բերան արած աղօթքներ կրկնում այլոց մօտ, որ սկսում ծիծաղես նոցա վերայ, դու կեղծում ես։ Երբ դու որբի և և այրու բարերար ձեւանալով, նորա գոյքն ու կալքերին աչք ես տնկել, դու կեղծում ես և այլն։

Ահա այս կեղծիքը փարիսեցիք իրենց համար ապրելու և փառաւորուելու զէնք էին ընտրել։ Այդ զէնքը սիրով ջարդել չկարողացաւ Փրկիչը և այժմ արդարութեան հարուածներով փշրում է նա «վայերի» մեծ յանդիմանութիւնը կարդալով։

Վա՜յ ձեզ կեղծաւոր դպիրներիդ ու փարիսեցիներիդ, դուք Աստուծոյ արքայութիւնը փակում էք մարդկանց առաջ. դուք մտնելու չէք, ուրիշներին էլ արգելք էք դառնում։

Վա՜յ ձեզ կեղծաւոր դպիրներիդ ու փարիսեցիներիդ, որ ծով ու ցամաք չափելով եկամուտ էք ձեռք բերում, որպէսզի գեհենին արժանի գործերի վերայ խարճէք։

Վա՜յ ձեզ, կոյր առաջնորդներ, որ ասում էք թէ տաճարով որ երդուես՝ մեղք չէ, իսկ եթէ տաճարի միջի ոսկով երդուես՝ մեղք է. մորոս ու կոյր մարդիկ, չէ՞ որ տաճարն է որ սրբում է ոսկին։

Վա՜յ ձեզ կեղծաւոր դպիրներիդ ու փարիսեցիներիդ. դուք ձեր ունեցածից տասանորդ էք տալիս տաճարին, բայց մնում էք անողորմ, անհաւատ. մժղուկներին քամում էք, ուղտերին կլանում. այսինքն աղքատներին վերջին պատառ հացից զրկում էք, ուղտի պէս խոշոր հարուստների կայքն էլ խաբեբայութեամբ կուլ տալիս։

Վա՜յ ձեզ կեղծաւոր դպիրներիդ ու փարիսեցիներիդ. դուք բաժակն արտաքուստ մաքրում էք, մինչդեռ ներքուստ անմաքրութեամբ լի է, այսինքն դուք ձեր արտաքինի վերայ էք ուշք դարձնում, բայց ձեր սիրտը կեղտերով լիքն է։

Վա՜յ ձեզ կեղծաւոր դպիրներիդ ու փարիսեցիներիդ. դուք նման էք պաճած գերեզմաններին, որոնք դրսից մաքուր, սպիտակ են, իսկ միջից՝ մեռելի փտած ոսկորներով լի։ Այդպէս էլ դուք դրսից արդար էք ձեւանում, բայց ձեր սիրտը լիքն է կեղծաւորութեամբ և անօրէնութեամբ։

Վա՜յ ձեզ կեղծաւոր դպիրներիդ ու փարիսեցիներիդ. դուք այն մարգարէների և արդարների գերեզմաններն էք զարդարում, որոնց ձեր հայրերն սպանեցին և ասում էք. «Եթէ մենք մեր հայրերի ժամանակումն ապրէինք, մարգարէների արիւն չէինք թափի»։ Դորանով վկայում էք թէ մարգարէներ սպանողների որդիքն էք։

Բայց դուք ձեր հայրերից անցել էք անօրէնութեամբ։ Օձի ձագեր, ի՞նչպէս պիտի ազատուիք գեհենու դատաստանից։

Այս ահեղ ու արդար դատաստանն իբրև հուր, կայծակ կեղծաւոր ժողովրդի գլխին թափելուց յետոյ, Փրկիչն իւր անհուն վիշտն ու սէրը մի տխուր մարգարէութեամբ է յայտնում, մի ողբամաշ հառաչանքով. «Երուսաղէմ, Երուսաղէմ, որ կոտորէիր զմարգարէս և քարկոծ առնէիր զառաքեալսն առ քեզ, քանի՜ անգամ կամեցայ ժողովել զորդիս քո, որպէս հաւ ժողովէ զձագս ընդ թևօք իւրովք և ոչ կամեցարուք. արդ թողեալ լիցին տունդ ձեր աւերակ...»։ Այո, կեղծաւոր, խաբեբայ ժողովրդի տունը վերջ ի վերջոյ աւերակ պիտի դառնայ։ Այդպիսի ժողովրդի համար է ասում և Եսայի կայծակնաշունչ մարգարէն.» Երկիր ձեր աւերակ, քաղաք ձեր հրձիգ, զաշխարհ ձեր առաջի ձեր օտարք կերիցեն, աւերեալ և կործանեալ յազգաց օտարաց.»

Ար՛դ, իմ պատուական ունկնդիր, կեղծիքի դատապարտութիւնը լսելուց յետոյ. համեմատիր քո սիրտն ու լեզուն, քո դուրսն ու ներսը, ու տես իրար հակառակ չե՞ն դոքա։

Հարուստ մա՛րդ, եթէ սիրտդ արծաթի սնդուկում փակելով մի մի մոմ ես վառում

*կամ մատաղի փող տալիս մի քանի փարա, որ բարեպաշտ երևաս, դու կեղծում ես, վա՜յ քեզ։*

*Վաճառական, եթէ որբի և այրու տուն ու կալուածք գրաւ առնելով մտածում ես արժան գնով ձեռք ձգես ու միևնոյն ժամանակ բարեբար երևաս խեղճերուն, դու կեղծում ես վա՜յ քեզ։*

*Տիկին, եթէ ուրիշների մօտ զաւակներից փայփայելով ու սէր ցոյց տալով ուզում ես ծածկել որ շարունակ նոցանից հեռու զուարճանում ես, դու կեղծում ես, վա՜յ քեզ։*

*Բարեգործ, եթէ մի աննշան բարիք ես անում և սրտիդ մէջ պահանջում, որ դորա համար քեզ փառաբանեն, դու կեղծում ես, վա՜յ քեզ։*

*Օրիորդ, եթէ ծնողներից խաբելով հեռանում ես լաւ պատրուակով, որպէս զի անարժան գործ կատարես, դու կեղծում ես, վա՜յ քեզ։*

*Երիտասարդ, եթէ մի հարուստ աղջկայ ձեռքն ես խնդրում դրսից՝ նորան, ներսից փողը միայն սիրելով, դու կեղծում ես, վա՜յ քեզ։*

*Ուսումնական, եթէ գիտութիւնդ միայն բառերի և շորերիդ մէջն է, որի տակ թագցնում ես տգեղ սիրտդ, որ ուրիշները չտեսնեն, դու կեղծում ես վա՜յ քեզ։*

*Հայրենասէր եթէ շրթունքներիդ վրայ է միայն հայրենիքդ և ոչ սրտումդ, դու կեղծում ես վա՜ քեզ։*

Քահանայ եթէ աղօթքը, խունկը, մոմը, պաշտօնը չի անուշանում մաքուր զգացմունքներովդ, սրտից վերայ չի ազդում և պաշտօնը կատարում ես միայն հաց ճարելու փեշակ, դու կեղծում ես, վա՜յ քեզ։

Եւ այս փարիսեցիական կեղծիքը վերջ ի վերջոյ պակասեցնում է փոխադարձ վստահութիւնը, հաւատք տան մէջ, ընկերը, հայրենիքում. լցնում է այդ տեղերը կասկած, անվստահութիւն. այո. այդ կեղծիքը քանդում է տուն, քանդում եղբայրական սիրոյ կապեր, քանդում հայրենիք և փակում արքայութեան դռները Քրիստոնէի առաջ։ Եթէ դուք ձեր գեղեցիկ շորերի ու զարդերի տակը մի գեղեցիկ ու անկեղծ սիրտ չունիք դուք նման էք բռնել գերեզմաններին, վա՜յ ձեզ։

Սոլոմոնից աւելի բան չգիտեմ, որ ասեմ. եթէ քարոզը յիրաւի ձեր սրտի վերայ ազդում է, այս քիչն էլ կազդէ, իսկ եթէ չէ, Քրիստոսի վայերը ձեր գլխի վերայ կախուած են։ Ես ձեր առաջը դրի ճշմարտութիւնն ու կեղծիքն, ինչպէս օրհնութիւն և անէծք. ընտրութիւնը ձեզ է մնում. ընտրեցէք որը կամենաք։*)

---

*) Ծանօթութիւն. Խօսուած է 1901 թ. մարտի 18 ին մեծի պահոց Ե. կիւրակէին Շուշու վերին թաղի եկեղեցում։

## Փ.

## Ս. ԼՈՒՍԱՒՈՐԻՉԸ

Ինչպէս հինաւուրց փոքրիկ վանական աշակերտն իւր վարդապետի մօտ ծունկի եկած ս. Գիրք թերթելիս, ինչպէս փոքրիկ մանուկն իւր դաստիարակ մօր քովը նստած պատկերագիրք նայելիս, այնպէս էլ ես մերթ ընդ մերթ, երբ կեանքի արևը վշտերի ամպերով պղօտանում է առաջիս, գնում ծունկ եմ իջնում յաւիտենական յիշատակների գրքի, դարերի ու ազգերի վարժ նկարիչ հսկայ ժամանակի ոտքերի առաջ: Ժամանակը քուն չունի, ժամանակը յոգնել չգիտէ նա մի հսկայական գիրք ունի առջևը դրած, ձեռքին անմաշ վրձին. նա դարերի ու վայրկեանների պատկերներն է քաշում: Բարի եղիր ով ժամանակ, թերթիր գիրքդ, ցոյց տուր այն երեսները, ուր Հայ ժողովրդի դարաւոր կեանքն են արձանագրել:—Հէյ մարդ, պատասխանում է նա, դու մօտենում ես ինձ այսօր, մաշուած սրտով, սգաւորի սև քօղով, ես չեմ ուզում որ սիրտդ վաղաժամ փշրուի դիւրաբեկ անօթի նման, ուստի ծածկում եմ քո առջև գրքիս այն երեսները, որոնք սիրտ են խորտակում: Վրձինս թաթախելով Հայոց սև

արձանին է երկրպագում. տեսնում եմ ոսկեձոյլ Անահիտ կուռքի շուրջը պար բռնած մի խելակորոյս կոյս ամբոխ. տեսնում եմ անհաւասարութեան հարուածով թափթփած մի խեղճ ժողովուրդ, շքաւորների անպէտների մի բազմութիւն ստրկական ծառայութիւններ անելիս ոյժով դասին. տեսնում եմ կանանց բազմութիւն այր մարդկանց ոտքերի տակն ընկած. տեսնում եմ մատաղ մանուկներն արհամարհուած, տեսնում եմ գթութեան աղբիւրը ցամաք, որոյ անուշ ջրերը դառնացած: Մէկ խօսքով զուտ մարմնի կեանք երկրի կեանք նախանձի օձերով, ատելութեան խայթող կարիճներով, արիւնըռուշտ առիւծներով լցուած մի խոր մթին վիրապ:

Այդ վիրապի մէջ արձանանում է իմ առջեւս այսօր մի հսկայ, մի հերոս, մի աննման սուրբ, քրիստոնէական սիրոյ մէջ թաթախուած մի լուսավառ խաչով: Հեթանոս արքան իւր զէնք ու զօրքով, հեթանոս քրմեր իւր արծաթ ոսկով, նախանձոտ ժողովուրդ իւր ատելութեամբ, եսականութիւնն օձի խայթոցով զինուում կանգնում են սիրոյ առաքեալի դիմացը. Հարուած հարուածի ետևից, թոյն թոյնին յաջորդելով թափւում են կենդանի նահատակ ս. Գրիգորի վերայ և նորան սոսկալի

տանջանքներով ատելութեան գուբն իջեցնում կարծելով թէ մեռաւ նա, մեռաւ սէրը։ Վիրապից դուրս նորէն մթութիւն, նորէն մտաւոր և բարոյական կուրութիւն, հոգեկան հիւանդութիւն. Թագաւորը խոզի կեանքով ապրելիս, իշխան ու ժողովուրդ նորան հետևելիս. Իսկ վիրապի մէջ կենդանի է սէրը, կենդանի սիրոյ առաքեալը 15 տարի. և երբ էր տեսել որ սէրը արիւնով խեղդուի, մահով ջնջուի, հալածանքի գերեզմանում անշարժ, անկենդան պառկի. դա մի պողպատի ժայռ է, որի վերայ փշրւում է ամէն անարգ հարուած։

Բազմալեզու է սէրը, նա խօսում է պագանների հետ, նա երկնից թռչուններին իսկ մօտն է կանչում, նա իբրև զեփիւռ շրջում է ծաղկանց երեսին իբրև սօսաւիւն ծառոց տերևին, իբր անոյշ մեղեդի մարդկանց սրտերին։ Եւ այդ սիրոյ լեզուն հասկանում են ս. Գրիգորի շուրջը պատած օձերն ու կարիճները և չեն խայթում, այլ երախտագիտութեամբ լիզում են նորա ողորմած ձեռքերը։ Սա չէ առասպել, այլ խորհրդաւոր իրականութիւն։ Մօտ օրերս մի պատկերագիրք թերթելիս տեսայ սէրը կուսի պատկերով առիւծի գլուխը գրկած հոլանի թևերով, տեսայ նոյն սիրոյ ոտքերի առաջ առիւծի հպարտ գլուխը խոնարհած։ Եւ առիւծ

Տրդատի թագաւորի հպարտ գլուխը ես տեսնում եմ վերջ ի վերջոյ սրբոյ առաքեալ ս. Գրիգորի ոտքերի առջեւ խոնարհած։ Հալածուած անզէն մէկը՝ խաչի լուսով զարդարուած յաղթանակեց. Հայոց աշխարհի հեթանոս անհաւատարութիւնը հաւատարութեան, եղբայրութեան դաշտ դարձաւ ու այդ հաւատարութեան վերայ իբրև մշտախօս վկայ քրիստոնէական մաքուր հաւատի, պայծառ սրբոյ՝ արձանաձև կանգնեցաւ Հայոց ս. Էջմիածին, Աթոռ Հայրապետական. վանք ու վկայարան։ Առեղութեան օձերն ու կարիճները սողալով մթին խորշերն անհետացան և Հայոց աշխարհի համար քրիստոնէական հաւատի լուսափայլ երկինքը բացուեցաւ ։Մէրը կապեց Հայ ժողովրդին քրիստոնէական կրօնի և լուսաւորիչ ս. Գրիգորի հետ։ Հայ ժողովուրդն իմացաւ երախտագիտութեամբ փարուել իւր լուսաւորչին։ Այդ երախտագիտութեան չափը հասկանալի դարձնելու համար մի օրինակ պատմեմ։

Հնդկաստանի հսկայական անտառներում շրջում էր մի որսորդ. նորա ականջին մի առիւծի աղիողորմ մռնչիւն հասաւ. գազանի ձայնի վերայ ուրախ ուրախ վազաւ որսորդը, որը մօտ էր. բայց ինչ տեսնի. բոտ հսկայական օձերից մէկը ծառն ենելով՝ իւր պոչը փաթթել էր

առիւծի մէջքին ու սեղմում էր ծառի արմատին. էլի մի քանի վայրկեան և առիւծը իւր շունչը պիտի փչէր սոսկալի տանջանքների մէջ։ Զգացւում է որսորդը և ուզում է ազատել առիւծին. նա հրացանն ուղղում է օձին, բայց վախենալով մի գուցէ և առիւծին դիպչի գնդակը, մտածում է մօտենալ և դաշոյնով կտրատել օձին. նորա մտքով չի էլ անցնում թէ կատաղի առիւծն ազատուելուց յետոյ հէնց իւր վրայ կ'յարձակուի. նա միամտութեամբ հաւատում է թէ սէրը, անձնուիրութիւնը չի մեռնի։ Կտոր կտոր օձը ընկնում է և առիւծն ազատւում։ Ո՜վ զարմանալի երախտագիտութիւն. առիւծը վրայ է վազում որսորդին, լիզում նորա ձեռքերը, պտտւում նորա շուրջը և նորանից ընդմիշտ անբաժան մնում, իբրև հաւատարիմ ծառայ, թիկնապահ, երախտագիտութեամբ կապուած մի կամաւոր գերի։ Տարիներ անցնելուց յետոյ որսորդը ծովով պիտի Անգլիա մէկնէր. անբաժան առիւծը հետևեց նորան մինչև նաւը։ Նաւապետն առիւծին նաւի վրայ չընդունեց և երբ նաւն ափից հեռացաւ վշտաւոր առիւծն աչքերը բարեկամի դէմքին քցելով ծովն ընկաւ, լողաց, լողաց և վերջին մնաս բարովի հայեացքով ալիքների տակն անհետացաւ.

Հայ ժողովուրդը ճիշտ այս առիթի հաւատարմութեամբ սիրեց ու պաշտեց Լուսաւորչի հետ, որ առաքելութեան, հեթանոսութեան խաւարի բռն օձն էր սպանել։ Հայոց դաշտերի խաչքարերը Լուսաւորչի անունով կոչուեցան, սառնորակ աղբիւրները՝ Լուսաւորչի աղբիւր, կամ «լուսաղբիւր» մատուռները՝ լուս մանուկ։ Հայը հող ու ջրով կապուեցաւ այդ անուան հետ, իւր ուխտը Լուսաւորչի անունով կնքեց, իւր աղօթքն այդ անուան նուիրեց։ Մի աւանդութիւն ասում է թէ, Արագած սարի վրայ Լուսաւորչի անպարան կանթեղը երկնքից կախ կ՚վառի միշտ և ամէն տարի Զատկի ճրագալոյցին արդար մարդիկ որևէ մտնելուց յետոյ տեսնում են այն։ Այո, հաւատի և սիրոյ աչքը պիտի տեսնի թէ Լուսաւորչի լոյս. Հաւատն է որ կ՚վառի Հայոց գլխու վերև. առանց այդ կանթեղի կ՚հանգչի և Հայն։

Լուսաւորիչ Գրիգորի անուն շատ մայրեր իրենց զաւակների վերայ դրին որ կրեն այդ անուան նուիրուածներ նորա օրհնութեամբ և առաքինութեամբ ապրին։ Մկրտութեան ս. դրոշմի իւրը Լուսաւորչի աջովն է սրբանում և իբրև Լուսաւորչու դրոշմ Հայ եկեղեցականի ճակատն է պատկերում։

Ահա թէ ինչ է Լուսաւորիչ. Հաւատի սիւն,

Հայոց կեանքի կետրոն, ցաք ու ցրիւ Հայուն միացնող կապող ոսկի օղակ, ճանապարհ բարի դէպի երկնից անանց արքայութիւն։

Այլ աւա՜ղ, մեր նախնեաց այս ս. զաւանանքը, որ Հայոց եկեղեցին տարէնը երեք անգամ կարդում է ս. Լուսաւորչի երեք տօնին, կարծես աւանդներ քիչ ունի. եւ տեսնում ենք մեր քրիստոնէական պայծառ հաւատի մէջ հեթանոսական գործեր, կարծես հին հեթանոսութիւնը կրկին է բարձրացնում. հաւատը պակսել արծաթն այժմ առել, շնորհքը պակսել, նախանձը լծե առել, սէրը մեռել ատելութիւն յարութիւն առել. ճշմարտութիւնը լռել՝ բամբասանքը խօսում, Լուսաւորիչը մոռացուել օտարկուռքերն են կանգնել։ Այս տխուր իրականութեան առաջ մի մշուշապատ ապագայ եմ տեսնում. միտքս է գալիս Նինուէ քաղաքը. Յովնան մարգարէն գլխին սպաս մոխիր ցանած զղջման հրաւէր է կարդում. «Այլեւ երեք աւուրք եւ Նինուէ կործանեսցի»։ Երջանի՜կ մարգարէ. Նորա խօսքը լսեց ժողովուրդը զղջաց ու փըրկուեց։ Չեմ ես մարգարէ եւ ոչ իսկ որդի փոքրին մարգարէի. բայց սրտի համայն ընդարձակութեամբ հոգւոյս բոլոր զօրութեամբ հրաւէր եմ կարդում ձեզ, Հայ եղբայրներ, դարձէք ս. Լուսաւորչին, զղջման արցունք յուզեցէք

*ձեր աչքերում, ուր և ճշմարտութիւն ձեր սըրտում ու մի թողնէք որ Աստուած մեր Նրնուէն կործանի։*

*Լուսաւորչի կանթեղը վառ է. Հայոց սըրբազնագոյն Հայրապետն այդ կանթեղի պահապանն է, որքան եպիսկոպոսները նորա մէջ հաւատք իւղ լցնողներն։ Սուխծի երախտագիտութեամբ բարձրէք ձեր աչքերը դէպի Հայոց տան արթուն պահապանները։*

*Մեր անմահ հօր, Մեծ Լուսաւորչի հաւատը լոյս տայ մեր հոգուն, սէր՝ մեր սրտին, չարչարանքները՝ լոյս մեր աչքերին, որ համոզուինք թէ միայն Լուսաւորչի և նորա նուիրակների հետ կապուելը մեր երկնաւոր ու երկրաւոր կեանքը կ՚քաղցրացնէ, որ համոզուինք թէ. «Ամենայն Հայոց տուն ի վերայ աջոյն Լուսաւորչի հաստատեալ կայ»։*)*

*) Ծանօթ. Խօսուած է 1901 թ. Մեծի պահոց ս. Լուսաւորչին տօնին Շուշու Գաղանչեցոց եկեղեցում։

## ԺԸ.

### ՑՈՒՑԸ ԼԻՑԻ ՁԵԶ

Հին ու նոր նուիրական յիշատակների սիրով սնուած և աճած Հայ վարժապետը և դպրանոցին մատաղ սաները մեր ժողովրդի զգացմունքների սրբազան թանգարանից մանրիկ զարդեր միայն հանդէս բերին ձեր՝ առջև երգերով և արտաբերութեամբ, իբրև գրական առաւօտու առաջին փորձ։ Նոքա պարտք կատարեցին. նոքա վարժուած են թէ, ինչ կոչումն ունին, ինչ պարտքեր։

Պարտականութեան զգացմունքը առաքինութեանց սանդուխքի վերին աստիճանն է. դա այն ներքին անուշիկ ձայնն է, որ հրամայում է մարդուն հաւատարիմ մնալ այն կոչման, որին կոչուած է, մոռանալ ինք զինք ու միշտ մերձաւոր, եղբայր, հայրենիք, Աստուած յիշել։ Թերթեցէք սրբերի, հերոսների, նշանաւորների կենսագրութիւնը, որ լաւագոյն գրքերի ծալքերումն է փռուած և դուք այս տապանագիրը կ՚կարդաք՝ հալածուեցան, նախատուեցան, քարկոծուեցան, սղոցուեցան, սրով մահուամբ մեռան, բայց չընկճուեցան և այս անօրինակ տոկունութիւնն ու անձնուրացութիւնը ծագեցաւ նոցա սրտում

պարտաճանաչութեան անմահ ծառի վերայ։ Համբոյր այն դուրք ու ոսկրացած ճակատներուն, որոց լուսազոյն զարդը ամբոխի մատներով հիւսուած փշեայ պսակն է եղել։

Ամէն մարդու և ազգի համար պարտաճանաչութեան առաքինութիւնը նոյնն է պարտքերն այլ. այլ է Հայ հովուի պարտքը, հօտինն՝ այլ. այլ է Հայ կնոջ պարտքը, մարդունն՝ այլ. այլ է Հայ ուսուցչի պարտքը, աշակերտինն՝ այլ։ Սոցա ամէնքի պարտքերը լուսաւոր և բնական ժառանգութիւնն է, որ մեր ընտիր նախնիք սահմանեցին ու թողին մեզ։

Այստեղ այս նուիրական յարկում, Հայոց ու եկեղեցու այս նախագաւթում, Հայ վարժապետն իւր սանիկի ձեռքը բռնած տանում շրջեցնում է յիշատակաց աշխարհը։ Հայ վարժապետի առաջ բացուում են գերեզմանները, յարութիւն առնում և նախնիք, օրհնում ու գգւում Հայ աշակերտին, յորդորում որ անմոռաց պահէ իրենց լեզուն, մրմունջ, աղօթք ու անունն։

Հայ վարժապետը բերում շրջեցնում է իւր սանիկին արդի Հայ ժողովրդի մէջ. մատաղ կուրծքը վեր ու վար է դառնում դեռկուսական ազգի երգն ու ողբը լսելով. նա ուխտի ծունր է խոնարհում վարժապետի առաջ և երդւում թէ քանի շունչ կայ իւր կրծքում

սիրտի Հայ ժողովրդի երգն ու տաղը երգէ ու տարածէ, լծէ իւր կրծքի մէջ սիրտի պահէ՛ նորա սէրն ու հաւատ, նորա յոյսն ու հոգին։ Ահա դաստիարակ ու սանիկ կանգնած են գիշերուայ պահուն մի հսկայական խարոյկի առաջ, որից հազարաւոր մարդիկ իրենց ճրագներն են վառում. դա համաշխարհային գիտութեան խարոյկն է։ «Վառէ, սանիկս, վառէ ճրագդ. եւ նորա մէջ Հայոց պաշտելու ծաղիկներից հանած իւղ եմ լցրել, միայն պատրոյգն է օտար. վառէ ու յետ դառնանք շրջենք մեր ժողովրդի մէջ, որ գիշերուայ խաւարի ծոցումն էլ քեզ ցոյց տալու շատ բան ունիմ»։ Ահա այս է Հայ աշակերտի պարտքը, նորա անդրանիկ առաքինութիւնը։ Այս առաքինութեան մէջն են մարժեցնում Հայ ուսուցիչն իւր սանիկներին։ Նորա պարտք են կատարում։

Սակայն պարտքերը հատ հատ օղակներ չեն, այլ շղթայ. անհնարին է ինձ կանգ առնել ամէնքից պարտքերի վերայ. այդ առանձին տօներու և ժամանակներու կ'թողնեմ. բայց պարտքերէն անդրանիկն ու սուրբը պարզելու համար երկու օրինակ կ'բերեմ և այդ հերիք թող լինի հասկացողի համար։

Ուրբաթ է օրը, երեկոյեան դէմ. տերը իւր մուտքի առջև բանկուել է, . օրը շուտով

կ՚հանգչի։ Երուսաղէմի Հրէական թաղի նեղ փո-
ղոցներում արտասովոր կենդանութիւն է տի-
րում։ Աշխատաւոր Հրէայք տուն են մտնում և
հազար ու մէկ գոյներով մաքուր հագնուած
դուրս են գալիս։ Նոցա շորերը, բազմագոյն
հագուստները տօնական տեսք են տալիս փո-
ղոցներին. բայց լուռ են նոքա ինչպէս գերեզ-
ման։ Նոքա սանդուխաձև փողոցներով իջնում
են դէպի քաղաքի այն մասը, ուր երբեմն Սո-
ղոմոնի սքանչելի տաճարն էր կանգնած։ Հեռու-
ից լսւում է հառաչանք, հեծկլտանք, լաց,
հրաշունչ հոգոցներ ու նեղ փողոցներով հոսում
է ուղի և ողբի վտակը։ Ողբերի աղբիւրը մի
առանձնացած այրի պատ է հսկայական քա-
րերով. դարաւոր ժամանակների կնիքը՝ իբրև
դեղնութիւն թափուել է նորա վերայ և ոս-
կեզօծել մայր մտնող արևի կարմիր վարսերով։
Ահա այդ բեկորի խոռոչներում հազարաւոր
մոմեր են վառւում։ Հրէայ կանայք սգւոր
շղարշով մօտենում են այդ պատին, այդ քա-
րերին, անօրինակ սիրով շրթունքներով կպչում
նոցա, սպառում են իրենց անսպառ արցունքը,
յետ քաշւում նստում յատակի վերայ, բարկ
հառաչանքներով դատարկում կուրծքի այրող
փարոյկը։ Կանանց յաջորդում են տղամարդիկ
և այդ վայրը սոսկման աղաղակով, լաց ու շի-

ւանով լցւում։ Այդ պատից, այդ քարերից, որ բիւրաւոր սերնդի արցունքներով է լուացուած, արտմութիւն, միշտ է բուրում, սոսկաւմն տառապանքն։

Այդ բեկորի առաջ կանգնած են աշխարհի զանազան կողմի Հրէաներ, տարբեր իրենց տարազներով, կրթութեամբ, լեզուով. բայց ամէնքըն այդ աւերակի լեզուն, որ օտարի համար համր է, հասկանում են. ամէնքը հասկանում են իրար արցունքների լեզուով և հեծեծանքներով ընկնում նորա առաջ իբրև վաղամեռ սիրելու դիակի առաջ, որի մահն անհաւատալի է թւում։

Հեծկլտանքի, խուլ հեծեծանքի, հառաչների ու ողբի միջից լսւում է մի Ղեւտականի սրտառուչ երգը, որ կրկնում է ողբացող ժողովուրդը. «Կործանուած է փառաւոր տաճարը և մենք միայնակ կանգնած ենք այստեղ ու լալիս.

Աւերուած տաճարի համար մենք միայնակ կանգնած ենք այստեղ ու լալիս.

Մոխիր դարձած պալատների համար մենք կանգնած ենք այստեղ ու լալիս.

Մեր անցեալ փառաց համար մենք կանգնած ենք այստեղ ու լալիս.

Մեր մեծագործ ընկած հերոսների համար մենք կանգնած ենք այստեղ ու լալիս.

Արցունք դարձած թանկագին քարերի համար մենք կանգնած ենք այստեղ ու լալիս.

Մեր նախորդաց մեղքերի համար մենք կանգնած ենք այստեղ ու լալիս...

Մենք կանգնած ենք այստեղ միայնակ ու լալիս...

Խղճա՛, ով Տէր, խղճա Սիօնի վրայ. Երուսաղէմի ցաք ու ցրիւ որդիներին ժողովէ, միացրու նորա սրտերը... և այլն։ Եւ այս սրտակոտոր երգի հետ մէկ տեղ լացող ուռենու տերևի նման կախուում քարշ են ընկնում հազարաւոր գլուխներ այն քարերի վերայ ու արցունքով լուանում։

Մթնում է օրը, նուաղում են հառաչանքները, սև սիրտ ժողովուրդը լուռ ու մունջ ցրուում է, անհետանում խավարի մէջ։

Այս օրերին, այս սուգի սրբազան բեկորը Իսրայէլի հին փառքի՝ Սողոմոնի սքանչելի տաճարի մի պատն է և այդ պատը զղջացող ժողովրդի փառքի վկան, յոյսերի հիմքը, միութեան կապն է։ Կար ժամանակ, որ Թագուհի Երուսաղէմի մէջ, Սիօնի լանջից մի հրաշալի ձայն էր լսուում իր տաճարն ու փառքն արհամարհող ժողովրդի ականջին. «Երուսաղէմ,

Երուսաղէմ, որ կոտորէիր զմարգարէս և քարկոծ առնէիր զառաքեալսն առ քեզ, քանիցս անգամ կամեցայ ժողովել զորդիս քո, որպէս հաւ ժողովէ զձագս ընդ թևօք իւրովք և ոչ կամեցարուք, արդ՛, թողեալ լիցին ձեզ տունդ ձեր աւերակ»։ Երուսաղէմը չ՚լսեց այդ ձայնը և այն հրաշակերտ մեծութիւնից միայն մի բեկոր մնաց, իբրև նախատինք անխրատ ժողովրդին։.

Ո՜րդ, Հայ ժողովուրդ, երբ դեռ քո սըրբազան տաճարն ու նորա նախագաւիթ հողեար դպրոցները կ՚պահուէին Ռուսիոյ ամենողորմած կայսեր հովանու ներքև, սիրէ, կարդուէր ս. Սիօնին ու դպրոցի հետ, որպէս զի յաւիտեան սերնդին մի գեղեցիկ բեկոր չ՚թողնես, որ արցունք քամէ նորա աչքերից, որ նզովք քաշէ նորա կրծքից դէպի այն նախնիք, որոց ամլութեան շունչն իբրև հուր ի ծծուծս լափեց, աւերակ դարձուց փառքի փայլուն մնացորդներ…

Հա՛յ մա՛րդ, Հա՛յ կին, Հա՛յ պատանի, այս է քո պարտքը. յուշ լիցի քեզ Երուսաղէմի ողբի պարխալը, այո, յուշ լիցի քեզ։

Սիօնի սարի գլխայը, Եղէօնի ձորակի այն կողմում, ցամաք, բուսական զարդարանքից զուրկ կանգնած է ցայսօր մի մենաւոր ծառ. այդ ծառի անունն իբրև մի նզովք է հնչում։

Ըստ աւանդութեան դա Յուդայի ծառն է, որից կախուեցաւ նա իւր անունը աշխարհի տիրապետութիւնների կտակելով։ Այստեղ նա հանգոյց տուաւ իւր վարդապետին. մի հանգոյց, որով աշխարհի բոլոր հանգոյցները կասկածներով թուլացուեցան։ Աւանդութիւնը սոսկման յիշատակներով լցուն այդ վայրումն է՝ դնում վերջին դատաստանը։ Նա ասում է, թէ, այդ օր արև չի երևի, աստղերը կ'թոթափին, կեանքը իւր շունչն է փչում։ Գեթսեմանի պարտիզից, Եղէօնի հովտից մի անօրինակ լոյս է երևում ու սփռւում աշխարհ և այդ լոյսի մէջ երևում է աշխարհի Փրկիչը։ Հնչում է հրեշտակապետի փողը, բացւում են գերեզմանները, յարութիւն առնում մեռեալներ, շուրջ կանգնում ահեղ դատաստանի առաջ։ Նորան անմեղների ամէնքը ծունկ են իջնում. միայն հեռու, մենաւոր ծառի տակ արձանացած կանգնած է Յուդան, դալուկ դէմքով, քարացած. նա անզօր է ծունկի գալու։ Ահա մօտենում է նորան ինքը Փրկիչը. մատնիչի շունչը խեղդւում է կրծքում, արիւնը կանգնում երակների մէջ։ Դալկացած ու սառն, ինչպէս մահ, նա նայում է Փրկչին։ Հեզ Փրկիչը մօտենում, հպում է իւր սուրբ ջերմ շրթունքներով նորա սպառած շրթունքներին և այսպէս է յետ տալիս Յուդայի

համբոյր մատնութեան գիշեր։ Ցանցագործներից ամենամեծը երեսն ի վար ընկնում է Նորա առաջ և թողութիւն ստանում։ Ամէնքը թողութիւն են ստանում բացի նոցանից, որոնք անօգնական են թողել աղքատ մանուկներին, որոնք մոլորեցրել են պատանիներին, որոնք անպաշտպան թողել թոյլերին ու վշտացածներին։

Հրաշալի է, այս աւանդութեան բարոյական իմաստը. այո՛, գթառատն Աստուած ներում է սոսկալի ապերախտութեան վիրաւորանքը իւր անձի դէմ, բայց չի ներում մատաղ մանուկներին վշտացնողներուն, չի ներում տառապեալներին մերժողներուն, վասն զի նոքա հաստատութիւն են ազգի, կեանքի, մարդկութեան, նոքա դուրս են մարդու անձնականից, նոքա Տիրոջ եղբայրներն են։

Հա՛յ հարուստ, յուշ լիցի քեզ այս սիրուն աւանդութիւնը. քո պարտքդ այս տեղից է բղխում. շատ են շատ անօգնական մանուկներ, որոնք քեզ համար և. յիշատակների պահապաններ պիտի լինին։ Քո աչքի առաջ մերկութիւն կայ, քաղց ու ծարաւով տանջուող մանուկներ կան, գրասէր բայց գրագուրկ աշակերտներ կան։ Յո՛ւշ, յուշ լիցի քեզ վերջին դատաստան։

Իսկ քո պարտքն ինչ է մեր տառապանքի օրերում, Հա՛յ կրօնաւոր, Հա՛յ կարգաւոր. վըշ-

տեսլի օրօր կարդա՛ Տիրոջ ժողովրդի մնացորդին, մինչև քո որդիները ձայնով նա սմափուի ատելութեան ծանր քնէն. Թող քո բաժինը միայն հալածանքը լինի, դիր անվեհեր ճակատդ նոցա նախատինքների առաջ. միշտ սիրէ. չէ՞ որ առաքինութիւնը վշտերի պսակն է, չէ՞ որ քրիստոնէութիւնը վշտաւորների կրօնն է։ Եւ երբ խաչը ճնշէ քեզ ու լքման թոյնով լցնէ հոգիդ, նայիր Գողգոթայի արիւնաներկ խաչին և սփոփուիր...

«Մի վհատիր», ել ասպարէզ
Ու եօթնալարի քո քնար
Եւ տանջանքի օրհներգ տուր մեզ
Սիրոյ աղբիւր մեզ համար»։*)

*) Ծանօթ. Արտասանուած է 1900 թ. Նոյեմբերի 19-ին Շուշու հոգևոր դպրանոցում աշակերտական գրական առաւօտուն իբրև ամբողջ հանդէսի ամփոփումն

## ԺԲ.

## ՔԱՋԱՐԻ ՆԱՀԱՏԱԿՆԵՐ

Որքան և անպաճոյճ, որքան և համեստ էր ձեր երկրպագութիւնը, հիացմունքը սուրբ արձանացած յիշատակի առաջ, այնուամենայնիւ քաղցր է տեսնել, որ վառվում էր ձեր սրտում խունկ պատրաստել մեծերի ու սուրբերի անուան համար ծխելու, որ գաղափարական կեանքի շուշան էր սփռում սրբոց գերեզմանի վերայ: Խօսելու ցանկութիւնն այսօր անշուշտ քնած էր իմ կրծքի տակ. բայց դուք ձեր պատանեկան սրտառուչ յոյսերի անձրևը ցօղեցիք նորա վրայ, ու սթափուեցաւ քնից։ Ուստի թող իմ մրմունջն էլ խառնուի ձեր աղօթքի և ուխտի հետ, թող իմ բաղուկներն էլ տարածուին դէպի այն սուրբերը, որ գաղափարական կեանքի լեռներու բարձունքումն են բազմած։

Մեր սրտերի երկրպագութեան այս հանդէսին, բարեկամ աշակերտներ, կուզեի քաջարի սուրբ մարդու կերպարանքը ցոյց տալ ձեզ, բայց անհնարին է ինձ անհունութիւնը գրկել. կուզեի լեզուով սրբութիւնը ճառել, բայց վսեմութիւնը պատմելու համար լեզու չկայ։ Եղել

էք գաչ բնութեան ծոցում գիշերուայ պահուն միայնակ ու նկուն. Ձեր շուրջը ծաղկավառ դալարքն, ձեր գլխացը երկրից երկինք սլացող հսկայ լեռներ, որոնց ատորոտը քերելով լուալով հոսում ու ճկուն մէջքով պտոյտներ գործելով խոյս տալիս արծաթափրփուր գետակը։ Ձեր գլխու վերև կապուտակ անհունութեան վերայ բևեռուած կ'պլպլան անհամար աստղեր. Նոցանից շատ աւելի վար կախուած կ'վառի ժպտերես լուսինը, նա ծիծաղում է վառելի վերայ, ծաղկանց երեսին։ Մեղմիկ աւայով սուլում է զեփիւռ։ Ձեզ թւում է թէ, այդ զեփիւռը հեռու յաւիտենականութեան սրտէն է գալիս. ձեզ թւում է թէ, այդ լուսինը յաւիտենականութեան աչքն է, աստղազարդ կապուտակ եթերքը՝ նորա հագած ծաղկաւոր ծիրանին, լեռները նորա գահն են, գետակն՝ արցունք, հազարերանգ դաշտ ու հովիտ՝ անձեռագործ գորգ նորա ոտքերու տակ փռուած։ Այս վեհութեան առաջ ձեր սրտումը հիացմունքի և երկիւղածութեան աղբիւր է ծնում ու խեղդում ձեր լեզուն, ձեր ձայնը։ Դուք ձեր փոքրութիւնն զգալով այս վեհութեան առաջ համրանում էք ու լուռ մնում։

Մեծ, սուրբ ու քաջարի նահատակները նման տպաւորութիւն են գործում մարդու վերայ։

Ես կանգնած եմ այժմ քան լեռներ բարձր, քան աղբիւր պարզ, քան լուսին պայծառ վեհ ու սուրբ առաքելոց առաջ։ Երկու հազար տարուայ խորութիւնից է գալիս նրանց անուշիկ ձայնը և արձագանք գտնում աշակերտական մտտաղ կրծքում։ Ժամանակի հզօր ալիքը բիւրաւոր մարդիկ է գլորել տարել յաւիտենական մոռացութեան ծոցը, բայց քաջարի սուրբերը, որոց պատուանդանը երկիրն է, օթեւանը՝ երկինք, կանգուն են անշարժ և կանգուն կ՚մնան, քանի որ աշխարհը բարոյական ոյժի կ՚կարօտի։

Ահա այդ սրբոց նկարագրելու համար անզօր է լեզուն, վասն զի նրանց հոգու պատկերը յաւիտենական կնքով է կնքած և անկարելի է, կտրել այդ կնիքը, լուծել այդ հանելուկը։

Բայց հետեւեցէք ինձ սիրելիք, դէպի վեր նայեցէք. անգիտութեան սև ամպերից, որի վերը սուրբ մարդիկն են, տեղ տեղ պատառուածքներ կան, նայեցէք այդ նեղ անցքերից ու տեսէք քաջարի սրբոց, որչափ տեսնել կարելի է։ Դոքա նման չեն սովորական մարդոց և ոչ դոցա աշխարհը՝ սովորական աշխարհին։ Մենք կանգնած ենք այստեղ և աշխարհի ձայնը մեզ ասում է. «Ուրիշների նման եղէք, ուրիշների նման գործեցէք, ուրիշների նման մտածեցէք, թող ընդհանուր սովորութիւնն իշխէ

տեղում են նորա գլխին և դէմին գլորում։ Մարտիկներն անգամ, որոց փրկութեան համար բարձրացաւ նահատակի ձայնը. մերկ սրերով շամփրեցին, կտոր կտոր մանրելով խառնեցին հերոսի մարմինը կրկէսի աւազների հետ։ Խաղերը շարունակուեցան, 80 հազար զոյգ ձեռք ծափ էր զարկում։

Վերջացաւ արիւնոտ կրկէսը. բայց անիրաւութեան ամպերը ցրուեցան անմիտ ամբոխի աչքերից. նահատակի արդար արիւնը նոցա հոգու վերայ ծանրացաւ, ամօթի զգայմունքը զարթեց ամէնի սրտում և կրկէսների հեթանոս խաղերն ընդմիշտ վերացան այն պատճառով, որ մի խեղճ կրօնաւոր բարոյական արիութիւն ունեցաւ և աշխարհի տարեգրութեան երեսներից մի սև բիծ ևս ջնջուեցաւ։

Մի քանի տասնեակ տարի առաջ Էտօն քաղաքում կար մի ճարպիկ, առոյգ և կայտառ պատանի։ Էտօնում ալեղ սովորութիւններ կային, յաճախ հաւաքուած ամբոխը այնպիսի կոպիտ երգեր էր երգում, որ տանելի չէր բարեկիրթ մարդու համար և ոչ վայել քրիստոնեայ ժողովրդին։ Այդպիսի մի ժողովում մեր յիշած փոքրիկ տղան, առանց վախենալու ծաղրից, ծեծից, կանգնում և արգելում է իւր ներկայութեանը անպատշաճ երգեր երգել. և երբ

մոլեգնած ամբոխը չի լսում նորան, նա թողնում է ժողովը և դուրս գնում։ Ամբոխն սթափուեց, բարոյական արի հերոսի վարմունքը վերջ դրաւ տգեղ սովորութեան։ Այդ պատանին Կօլրիջ Պատիսօնն էր, որ եպիսկոպոս եղաւ և Մելանեզիայում նահատակուեցաւ 1871 թ։

Հերիք է։ Այդ, այսպիսի մարդկանց կեանքի համեմատութեամբ մերն ստոր և եսական չէ՞. բայց դոցա կեանքն իսկ միայն աղօտ ստուերն է Փրկիչ Յիսուսի և նորա սրբազան առաքելոյ կեանքի, որոնք բարոյական արիութեան անսպառ աղբիւր են ոչ միայն Աստուծոյ սուրբերի այլև ամէն մարդու և մատաղ աշակերտի համար։

Այժմ, սիրելիք, ուզո՞ւմ էք բարոյական արի սուրբերին հետևել, ուզո՞ւմ էք ջանք գնել որոմների խլելու մարդկանց սրտերից, ուզո՞ւմ էք բարձր կանգնել ձեր շրջապատից, դաս առէք Էտօնի պատանուց, դաս առէք բոլոր սուրբերից Հայոց մեծ սրբերի տօնի օրը։

Գաղափարական կեանքի լերան գլխին կանգնած ձեզ են նայում Հայոց ժողովրդի առաքինի սուրբերը. ձեր հայեացքը դէպի նոցա դարձրէք այստեղից մինչ այնտեղ մի նեղ շաւիղ է անցնում, բարոյական արիների արիւնով կարմիր գծուած ճանապարհ։ Այդ շաւղի վերայ օձերու նման կ'սողայ թունաւոր նախանձը,

առիւծի պէս կ՚մռնչայ կոյր եսականութիւնը, նորա վերայ անընդհատ կ՚թռչեն դարան մտած չարութեան նետերը։ Այդ ճանապարհը քչերն են բռնում, այդ ճանապարհն է ցոյց տալիս ձեզ դպրանոցը։ Գօտեպնդուեցէք արիութեամբ, քաջացէք հաւատով, յառաջ դէպի՝ արհաւիրք, յառաջ դէպի անմահացած որբերի սարի գագաթը........

«Դեռ հեռու է կատարն անտամպ ու յստակ։
Բայց եթէ չհասնենք այնտեղ մենք այսօր,
Վաղն այնտեղ ենք անշուշտ. մերն է յաղթանակ,
Դէպի վեր, սարն ի վեր, անվեհեր զինուոր»։*

---

*) Ծանօթ. Խօսուած է 1900 թ. դեկտ. 2-ին ս. Թադէոս և Բարդուղ. առաքելոց տօնի օրը Շուշու հոգ. դպրանոցում, իբրև ամփոփումն ամբողջ հանդիսի։



## ԺԳ.

## ՀԱՅՐԻԿՆ ՀԱՅՈՑ

„Ոսկերք ցամաքեալք լուարուք զպատգամս Տեառն

Մանկական ու պատանեկական այս անոյշ ժոլժոլանքների տպաւորութեան տակ աչքիս յանդիման կ՚գայ ու կ՚փռուի մարդու ոսկորներով լի մի դաշտ։ Անկենդան դաշտի վերայով լալագին կ՚գալարուի, որի մրմունջ կ՚կարդայ ու ցամքած ոսկորներից լոյս տալով կ՚փախչի Յորդանան գետը։ Սիօնի սարի լանջից կիջնի Տէրը և Երուսաղէմի տաճարից ձեռքէն բռնելով կ՚հանէ հայրենի սուրբ տան հարազատ զաւակին. կ՚բանայ նորա կուրծքը, զոհարանից կրակ կ՚վերցնէ կ՚դնէ այնտեղ և ցաք ու ցրիւ ոսկորների դաշտ կ՚հանէ։ «Շրջիր, մարդու որդի, շրջիր այս ոսկորների ընդարձակ դաշտը, ապա իմ հրամանով ահեղ ձայն արձակիր. «Ցամքած ոսկորներ, ցամքած ոսկորներ, լսեցէք Տիրոջ պատգամը». գուցէ թէ կենդանանան դոքա։ Եւ մարգարէի հրաբորբոք շունչը կրկնում է «ոսկերք ցամաքեալք լուարուք զպատգամս Տեառն»։ Լսում են ոսկորները, ցրիւ յօդերը միանում են, ջիղ և միս է պատում վրաները։

«Մարդու որդի», արտասում է, դարձեալ Տիրաց ձայնը, մարգարէացիր ու ասա. «եկ շունչ, եկ չորս կողմից հողմերի նման, փչիր այս մեռեալների վերայ, որ կենդանանան, յարութիւն առնեն»։ Հնչում է մարգարէի դողդոջ ձայնը «եկ շունչ, եկ շունչ». և կանգնում են մեռեալները և յարութիւն առնում գիտակցած ժողովուրդը։

Ցամաքած ու թափուած ոսկորները այսերախառ ու անխորտակ Իսրայէլի ժողովրդի լաւագոյն զաւակներն էին. նոքա կենդանի էին, նոցա մէջ կեանք էր եռում, քանի որ Իսրայէլի աչքը ուղղուած էր դէպի Հայրենի սրբազան տաճար, ուր Սինայի պատգամաբերի հոգին էր խօսում, ուր Ահարոնի բուրվառի խունկն էր ծխում Հայրենի յիշատակաց առաջ, ուր պակակիր Դաւթի քնարն էր հնչում։

Բայց կուրացաւ Իսրայէլ. մոռացաւ թէ իւր նախամայրերից մէկը Ղովտի կինը Օմոր Սոդոմի կեանքի սիրոյ տենչանքով իւր աչքը յետ էր դարձրել և աղի քար կտրել, նոյն էլ իւր աչքը Սիոնից դարձուց և դէպի Բաբելական դաշտերն ուղղեց ու ակնկրացաւ, ցաք ու ցրիւ եղաւ ու դաշտերում տարածուեցաւ։ Այլ դեռ կ'լսուէր ոսկորների աշխարհի լուսաւոր Երուսաղէմի և. կրակը, այլ դեռ կ'պահուէր նախ-

Նոյայ հոգին այդ և տառապում ընտանիքների ձեռքում։ Նորա կիսուէին Տիրոջ հետ աղօթքի լեզուով. «Նորոգեա զմեզ Տէր իբրև զաւուրս զառաջինս». և Աստուած մարգարէ հանեց այր տանջարկից, որի հրաշունչ քարոզը կենդանութիւն տուաւ ոսկրացած Իսրայէլին։

Այնմամայից աչքս կ'դառնամ դէպի Մայր Արաքսի ափունք, փաղեմի պալարադեղ ծաղկաւէտ ափերում ցամքած ու ցրուած ոսկորների պաշտ. եմ տեսնում։ Տիեզերքի Տէրը Մասեաց սարի լանջէն լուսոյ Մայր Էջմիածնի պարզապատ զոհարանէն կրակ վերուց, Խորենացու երկնասահուղ Մեսրոպի վարդապետի շրթունքներին ու նորան ոսկորների ընդարձակ դաշտը հանեց։ Այն օրուանից կ'հնչէ նորա ականջին Տիրոջ ահեղ ձայնը, այն օրուանից բոցոտ հառաչանքներով կ'կրկնէ նա ոսկերք ցամաքեալք, ոսկերք ցամաքեալք, լուարուք զպատգամս Տեառն»։

Յիսուն տարի հնչել է այդ ձայնը ոսկորների դաշտի մէջ. ոսկրացած զգացմունքները միայն շարժուել են, բայց չեն կենդանացել։ Այժմ երբ Հայրիկն Հայոց ծերացած է, երբ իւր արմունքը կխոնարհի, կեանքի վերջալոյսին դողդոջ ձայնով միայն այդ երկախօսքը կ'կրկնէ «Ոսկերք ցամաքեալք լուարուք զպատգամս Տեառն»։

Ձեր աչքը դէպի Հայրապետութեան բարձունքը դառնայ, ձեր դէմքը դէպի Արաքսի հովիտ, ուսկից զարթուցիչ հովեր գան ու շունչ տան ձեր ոսկրացած զգացմանց։ Սպարդէին պիտի անցնին Հայոց Հայրենի այս վերջին հառաչանք, երբ Ռուսիոյ Ամենողորմած Կայսեր հովանաւորութիւնը կ'վայելէ Հայրապետութիւնն Հայոց. էլ երբ, ո՜վ, էլ երբ, իմ հարազատներ, կ'լսէք Տիրոջ պատգամը, կ'կենդանանայ ոսկորներ ու կ'կարդաք «Զարթիք փառք իմ, զարթիք, և ես զարթեայց առաւօտուց. ալէլուիա«

Յուշ լիցի ձեզ, իմ հարազատներ, Իսրայէլի.. ոսկերց դաշտը յուշ լիցի ձեզ։*)

---

*) Ծանօթ. Խօսուած է 1902 թ. փետր. 14-ին Նորին Ս. Օծութեան Մկրտիչ կաթուղիկոսի անուանակոչութեան տարեդարձին Շուշու հոգևոր դպրանոցում, իբրև ամփոփումն ամբողջ հանդէսի։



## ԺԳ.

## ՄԻ ՆՈՐ ԱՒԵՐԱԿ ԱՒԵՐԱԿԱՑ ԱՇԽԱՐՀՈՒՄ

„Աւաղ զրկանացս, աւաղ թշուառական պատմութեանս ողբամ զքեզ Հայոց աշխարհ“ (Մովս. Խոր.)

Դեռ կ՚ծփծփան Սեւ ծովի ափեր Հայ ժողովրդի արեան կարմիր կոհակներով, դեռ կը հնչէ սար ու ձոր շարժող հառաչանքներից աղեխարշ արձագանք Սասնոյ սարերուց, ուր անօրէն սրէն արիւնաթաթաւ ընկաւ մի բազմաչարչար ժողովուրդ. դեռ կ՚դեղեւին օտար դռներում քարշ եկող հէք ժողովրդի որբացած զաւակներ, դեռ Ալաշքերտի երկրաշարժից խորտակուած ժողովրդի գերեզմանի վերայ կը մխայ խունկ, դեռ կ՚լսուի Էրզրումի մեր Հայ եղբարց սրտակտոր լացը երկրի ծոցն անցած հարիւրաւոր սիրելեաց դամբարանի քով, որոց կենդանի մնացածները ձմրան ձիւնը իրենց բոբիկ ոտքերով կ՚հալեն կամ արեան կարմիր վտակով կ՚զարդարեն։

Իսկ այժմ կանգնած է մեր առջև Շամախին իբրև մի հսկայական գերեզման, մի քարակոյտ, որի տակ մեր հարազատները կ՚հանգչին, որի վերայ թշուառացած ժողովրդի թըշուառագոյն մնացորդը քարացած կեցած է։

Եւ ի՜նչը լայ դեռ չունչը թերանին մայրը՝ փլատակների տակ ջարդուած իւր սիրասուն զաւակներին մէջ բռնուէր կենդանի մնացածների քաղցն ու ծարաւը։ Ի՞նչը լայ կենդանի մնացած որբը՝ երկրի ծոցն անցած իւր ծնողներին, մէջ ինք զինքն, իւր անտէրութիւն։ Ի՞նչը լայ Հայ աղջիկը՝ իւր քնտիր վարդամեռ փեսան՝ մէջ իւր անապատացած սիրտն ու անպարտաութիւնը, որ անպաշտպան մնաց հալերից դուրս...

Այս սոսկալի թշուառութեան առաջ, որ իբրև տասնամեայ հեղեղ հասում ու ջնջում է մեր սիրական ազգ, միտքս է գալիս մեր աննման Հօր ս. Խորենացու ողբը. «Աւաղ զկանայս, աւաղ թշուառական պատմութեանս, ողբամ զքեզ Հայոց աշխարհ»։

Աւերակների աշխարհում աւելացած այդ նոր աւերակի վերայ աչքիս յանդիման է գալիս ինքը Փրկիչն Յիսուս ձեռքը դէպի ձեզ մեկնելով, ով քրիստոնեայք.— «Երանի ողորմածաց, զի նոքա ողորմութիւն գտցեն»։ Եթէ թշուառութեան հողմերը կարող են շարժել ձեր աչքի ծովեր, եթէ համարփուն եղբարց քաղց հառաչանքներ կ՚վառեն ձեր սիրտ, իմ հարազատներ, մօտեցէք, մօտեցէք քաղցի հալածեալներուն լի ձեռքերով։ Թող ձեր նուիրաբերութիւնն իբրև խնկահոտ բուրմունք դէպի վեր

ելնի, թող հոտոտէ Աստուած այդ նուէրն ու շարժուի մեր թշուառութեան վերայ: Քրիստոնէական գթութեան ճանապարհով կ'պահուի քրիստոնէութիւն, այս ճանապարհով կ'կանգնի այդ, այս ճանապահով կ'տեսնենք մեր նախնեաց աւետեաց երկիր և երկնքի անանց արքայութիւն, այս ճանապարհով կ'իջնի Բարձրեալ Աստուծոյ բարկացած սիրտը, այս ճանապարհով ժպիտ կ'գայ պառնացած երկնքի երեսին Հայոց աշխարհին նայելիս:

Շամախու շարժը համայն աշխարհի սիրտը շարժեց. Հիւսիսի հզօրարծիւը՝ մեր ամենողորմած Թագաւորը իւր հսկայական հովանաւոր թեերի տակն առաւ թշուառներին առատ օգնութիւն անելով. Հայոց որբացած ժողովրդի սգաւոր Հայրապետը՝ Հայրիկն Հայոց, իւր միշտ բաց, բայց աղքատիկ ձեռքով օգնութիւն հասաւ: Երկու պետերի վարմունքը թող գեղեցիկ օրինակ լինի մեզ համար:

Հայ քահանայք՝ որ միշտ պատրաստի հունձ ունիք Հայ ժողովրդի մէջ, այսօր անդաստանը խոպան դարձաւ, այժմ սերմանեցէք, որ նորից հնձէք. շատ չէ, ձեր ստացած տօնական մի աջհամբոյրն այսօր թշուառներին դարձուցէք:

Հայ կանայք, որ առաւել փափուկ զգացմունքներ ունիք, որ կ'սիրէք գովել գթութիւնն

ու հայրենասիրութիւնը, շատ չէ. ձեր ծաղկանոցի նման գլխարկների փետուրների մէկի գինը բաւ է, որ մի լծուածի սփոփանք դառնայ։

Հայ հարուստ, շատ չէ, միայն կանաչ սեղանի վերայ թափուող աւելորդ դրամից փշրանքներն հերիք է, որ Ջամալեան աւերակը վերականգնի։

Հայ աշակերտ, իմ պատուական սանիկներ. որ արձաղանք պիտի լինիք ձեր դաստիարակների լաւագոյն զգացմանց, գիտեմ շատ աղքատ էք, բայց մենք մի մի տետրակ պակաս կուզենք ձեզնից, նորա գինը ձեզնից աւելի թշուառ մանուկներուն տուէք, ու թող վարժուին ձեր ձեռքեր միշտ դէպի խեղճութիւն մեկնուելու։

Հայ ուսուցիչ, որ աւերակներու լեզուն ամենէն աւելի լաւ կ՚հասկանաս, որ երևակայութեանդ առաջ դարերի Հայոց թշուառութիւնը կ՚լեռնանայ, գիտեմ դու անմասն չես ու չես մնայ օգնութեան գործում։

Ահաւասիկ ձեր ամենից առջևը աւետարան գրի, ս. աւետարան կեանքի մէջը բացուած։ Ցոյց տուէք թէ դուք քրիստոնեայ էք, Հայ էք և չէք քարասիրտ։ Եւ քաջ իմացէք, եթէ ձեր խօսքերը, ձեր բարձրագոյն զգացմունքները պէտք եկած վայրկենին գործ չեն դառնայ, մեր ս. Նախնեաց արի հոգին կեռ

չի մեռնիլ, նա կ՚վերկենայ, կ՚կանգնի և տաճարի մէջ, կ՚հանէ ձեզ Լուսաւորչու հիմնած քրիստոնէական աւազանից, ձեզ փրկութեան աւազի մէջ կ՚մկրտէ, և դատապարտութեան մի տախտակ կ՚կախէ ձեր վզից այս վերտառութեամբ. «ահա փարիսեցի»:*

---

*) Ծանօթ. Խօսուած է 1902 թ. փետր. 17-ին Շուշու Ղազանչեցոց եկեղեցում:

# ԺԵ.

## ԱՐԴԱՐՈՒԹԻՒՆ

„Արդարութիւն քո արդարութիւն յաւիտենից
եւ Օրէնք քո ճշմարիտ են" (սաղմ.)

Երևակայութեանս առաջ փռուած մի դաշտ եմ տեսնում, պատերազմի դաշտ։ Հայրենիքի և ազգային շահերի միքիկը քշել բերել է երկու հակառակ բազմութիւն այս ընդարձակ դաշտը, որ արեան է ծարաւ։ Արևի շողերու առաջ ակնախտիղ շողշողուն սրեր, անձրևատարափ առհեղ հարուած, հնձուող թաւալգլոր արիւնաթաթաւ գլուխներ, բիւրաւոր անգլուխ դիակների անկումն, վիրաւորների աղեխարշ հառաչանք, մեռնողների երերուն շրթունքներ, խոցուած սրտերից թռչող վերջին շունչ և յետոյ... բոսորագոյն դիակներով պարզարուն մի դաշտ, արնահոս գետակ, արիւնի ծաղիկներ և խաղաղ մեռելութիւն։ Իսկ վերը՝ երկնից կապուտակի մէջ հանդարտ լողացող գերեզմանների պահապան լուսին։

Սոսկում եմ ես մի վայրկեան արնախում պատերազմից, որ բիւրաւոր մատաղ կեանքեր է փռում դաշտերի վերայ, շէնն՝ անշէն, ապատն՝ [illegible] առնելով։ Բայց ս. գրքի աշխարհից,

ուր պատերազմական գէնքի շառաչ, փողերի շչինդ է հնչել շատ անգամ, ականջիս մի ձայն է գալիս։ «Մարդու որդի, մի սոսկար պատերազմից, վասն զի նա շատ անգամ խաղաղութեան համար է մղւում, հայրենիքի անարգուած պատիւն է պաշտպանում, մարդասիրութեան համար է թափում արիւն և երբէք պատերազմը չէ ջնջել մի ազգի կեանք, երբէք թոյն չի լցրել մարդկանց սրտերի մէջ, որ կեանքը վարակուի, փթթի և ինքնիրեն մոխիր դառնայ։ Կայ մի ուրիշ դաշտ, ուր արիւն չկայ, բայց ուր մարդկանց ու ազգի ծաղիկը մոխիր է դառնում, հողմավար ցրւում և կեանքն յաւիտենական մեռելութեան փոխւում։ Այդ դաշտը անարգարութեան դաշտն է։

Անարգարութեան այդ սոսկալի դաշտը ապականուած մարդու և նման ազգի սրտի մէջն է տարածւում։ Ազգակեր անարգարութիւնից մեզ ազատ պահելու համար այսօր՝ արդարութեան երկրպագու Դաւիթ մարգարէն, անարգարութեան թշնամին՝ Ղուկաս աւետարանիչը, արդարութեան քարոզիչ՝ Պօղոս առաքեալը հանդէս են եկել, մէկն իւր քնարով, մէկն իբրև նոր կեանքի աւետաբեր, միւսն իբրև վերանորոգութեան զինուոր զգուշացնելու մեզ անարգարութիւնից, որ ապականուած

կեանքի, ինքնասպան ազգի լայնաբերան գերեզմանն է։ Լսենք նոյա խօսքը։

«Արդարութիւն քո արդարութիւն յաւիտենից և օրէնք քո ճշմարիտ են. փրկեա զիս ի զրպարտութենէ մարդկան և պահեցից զպատուիրանս քո (սաղմ. 118)»։ «Մի լինիք լծակիցք անհաւատից. քանզի զի՞նչ հաղորդութիւն է արդարութեան ընդ անօրէնութեան (կորնթ. բ. 6.)։ «Երանի է ձեզ, յորժամ ատիցեն զձեզ մարդիկ և յորժամ որոշիցեն զձեզ և նախատիցեն և հանիցեն անուն չար զձէնջ վասն որդւոյ մարդոյ» (Ղուկ. Զ. 22)։ Արդարութեան այն ադամանդը, որ այս սքանչելի խօսքերի մէջն է պարփակուած ես ցոյց կ'տամ, կ'բացատրեմ ձեզ։

Արդարութիւնը երկու ծաղկանի մէկ փունջ է. ծաղիկներից մէկն անաչառութիւն՝ միւսն անկեղծութիւնն է։ Լինել անաչառ, նշանակում է բարուն՝ բարի, չարին՝ չար ասել. լինել անկեղծ, նշանակում է՝ լինել այն՝ ինչ որ ես և չձեւանալ՝ ինչպէս որ չես։ Ապա ուրեմն լինել անաչառ, լինել անկեղծ, նշանակում է արդար լինել։

Արդարութեան լուսոյ հակայլութիւնը անարդարութեան խաւարն է. սա էլ երկու ծաղկանի մի փունջ է, որոնցից մէկը աչառութիւնն

է, միւսը՝ սուտն ու իւր եղբայր կեղծիքը. ծաղիկները սև են, հոտը՝ գարշելի։ Լինել աշառակոտ, ստել ու կեղծել նշանակում է անարդար լինել։ Արդարութիւնը յաւիտենական օրէնք է, որ տուն, ազգ է շինում. անարդարութիւնը ախտ է որ տուն, ազգ է քանդում։

Երբ դուք տեսնէք հարուստ մեծատան հսկայական ապարանքներ, ոսկու կոյտեր և առատ հաց և յանկարծ տեսնէք այդ ապարանքի կործանումն, մեծատան զաւակներին հաց մուրալիս, իմացէք, որ այն ապարանքը անարդարութեան վերայ էր շինուած, որ այն հացը անարդարութեան խմորով էր հունցած։

Երբ դուք տեսնէք մի ընտանիք շատ բազմաւոր ու երջանիկ և յանկարծ բաղդը խորտակուած, ինքն արտատաւոր, իմացէք որ անարդարութեան թոյնը լծագնուած էր այն բաղդի մէջ։

Երբ տեսնէք մի ազգ, ուր կինը մարդուն, մարդն իւր կնոջ, քոյրը եղբօր, եղբայր քրոջ, հովիւ հօտին, հօտն իւր հովուին, ընկեր ընկոր, որդին իւր հօր, ամէնք մէկին, մէկն ամէնքին խաբում, ստում, կեղծում հոգին,—մի խաբուէք այդ ազգի կենաց ծառի ճիւղ ու տերևով. նորա արմատում անարդարութեան որդը գործում է և շուտով անհետ դղրդինով կ՝խորտակուի այն ծառը։

Երևի կ'հարցնէք, ինչու չենք տեսնում անարդարութիւնը, որ չճաշակենք նորա դառնահամ պտուղները։ Որովհետև նա արդարութեան դիմակն է դնում, արդարութեան լուսաթաթախ շորերով է շրջում և այդ ծպտեալ անարդարութիւնը ամէն օր, ամէն ժամ ամէն վայրկեան արդարութիւնն է հալածում, արդարութիւնն է սղոցում, արդարութիւնն է քարկոծում, արդարութիւնն է խաչում։ Նորա ձեռքով ընկան մարտիրոսներ, նորա լեզուով թունաւորուեցան նահատակներ, նորա գրչով տարագրուեցան սուրբեր, նորա շղթաներով դատապարտեալի աթոռին կապուեցան ընտրեալներ։ Համբոյր նոցա անկման տեղերուն, դալկահար դէմքերուն, տարագրութեան կոխած հողերուն. մի կաթիլ արցունք նոցա հանդարտ՝ բայց վշտերով այրուող սրտերուն։

Բայց… բայց չէ տևական անարդարութեան յաղթանակը. յանկարծ երկնքի մի դըղրդիւնով բարձրանում է արդարութեան մռընչող քամին, հանում թափում է ծպտեալ անարդարութեան հանդերձը, մերկանում է դէմը, զզջում են մարդիկ և ամէնքի առաջ արձանանում կանգնում է արդարութիւնը։ Նա զուգս ու զարդ չունի, և արտաքինով չէ գեղեցիկ, բայց սարսափելի է։ Նորա աչքերի մէջ կրակ

կայ, որից սոսկում են չարագործները, նորա լեզուի վերայ մի սուր նշտար, որից դողում են աշխարհի հզօրները։ Այո՛, սոսկալի է նա, բայց շատ սիրելի։

Սիրելիք, իմ հարազատներ, սիրենք այդ արդարութիւնը, նա մեր կեանքի ճրագն է, մեր սրտի խաւար անկիւնները լուսաւորող կանթեղը, մեր երջանկութեան հողը, մեր ճակատը զարդարող պսակ։ «Եկայք շինեսցուք սուրբ զխորանն լուսոյ», կերգէին մեր սուրբ նախնիք. այդ լուսոյ իսկական խորանը մեր սիրտը հասկանանք. շինենք այդ կիսաւեր խորանը և թող արդարութիւնը իւր վայելուչ բնակարանումը բազմի։ Եւ այդ սուրբ խորանում ծունկի գանք ու աղօթքով մրմնջանք, «Արդարութիւն քո արդարութիւն յաւիտենից և օրէնք քո ճշմարիտեն»։*

*) Ծանօթ. Խօսուած է 1902 թ. մարտի 10-ին Շուշու Ագուլեաց մայր եկեղեցում։

## ԺԶ.

## ՀԱՅ ՕՐԻՈՐԴԻ ԲԱՐԻ ՎԱՐՔՆ Է ԳՈՎԵԼԻ

Ի՛մ բարեպաշտ ունկնդիրներ.

Տկար ուժերուս չափով շատ անգամ կենդանի խօսքի լեզուով խօսեցի ձեզ հետ. շատ անգամ հառաչանքներիս ձայնը բաղխել է ձեր սիրտ, բայց յետ դարձող արձագանքները, որոնք միայն քարոզչի սփոփանքը պիտի լինէին՝ բաւարար չեղան. այո՛, եղան որոնց մոմի նման փափուկ և հարթ սրտերու վերայ կենդանի խօսքի գրիչը փորագրութիւններ արաւ. բայց մեծ մասով երկաթի պէս կարծր սրտերի հանդիպեցաւ, ուր հետք չթողաւ։

Տեսել էք դուք մեծ քաղաքների փողոցներում ծաղիկներ ծախող տղայ ու աղջիկ աղքատներ, նոքա տառապանքներով ծաղիկ են ցանել, ջրել, հասցրել, որ մի օր իրենց զուրգուրած ծաղիկը վաճառելու ատենին և նոցա սիրուն տեսքը, անոյշ բոյրը դրամով փոխեն ու մխիթարուին։ Բայց ո՛չ ամէնքը գին են տալիս նոցա ծաղկէ փնջերին և շատ անգամ, իրիկուան դէմ թառամած ծաղիկները ձեռքում, վիշտը սրտում յետ են դառնում նոքա իրենց աղքատիկ

խրճիթը, յուսաբեկութեան և նոր յոյսերու ալիքներով ծեծուած։

Ճիշտ այդպէս է և քարողչի հոգեկան վիճակը. ոգևորութեան թևերով թռչում է նա դէպի Տիրոջ տաճարը իւր սրտի մէջ ցանած, իւր արիւնով ջեռուցած, իւր արցունքով ջրած ծաղիկները վաճառելու։ Բայց շատ անգամ ոչոք չի գնում նորա ծաղկունք և՝ սրտումը կրակ, աչքումն արցունք նա յետ է դառնում և յուսահատ առանձնութեան մէջ բողոք կարդում առ Աստուած. «Տէր, եթէ ես արժանի չէի քո փառքի բեմը ելնելու, ինչու ոգևորութեան կրակ վառեցիր իմ հոգու մէջ, նորա համար, որ քո իսկ անկած դալար ճիւղն այրես։ Դու էիր, որ քո մարգարէի թափիչ ձայնով հնչեցիր ականջիս «որպէս զի զետեղեսցի ես ոտք աւետարանչի ի վերայ լերանց բարձանց... Ե՛լ ի վերայ լերինդ բարձու, աւետարանիչդ Սիոնի, բարձրացո զբարբառ քո, աւետարանիչդ Երուսաղէմի ...»։ Քո ձայնն էր որ իմ մատաղ սրտումս որոտաց. «Որդի մարդոյ, դէտ կարգեցի զքեզ ի վերայ տանդ Իսրայէլի.... Իսկ այժմ «Տէր, ո՞ հաւատաց լրոյ մերում»։ Ուրեմն խաբեցիր ինձ, ով Տէր։

Ահա այսպիսի յուսահատ մաքառման մէջ էր մի օր, հոգուս փրփրուն ծովի ալիքները

երկար ժամանակ լողինեցին աչքերը, մինչև որ ուժաթափ եղան և խաղաղութիւն բերին։ Ելան բոլորած միտքին. ընկողմանած դիրքիս մէջ հայեացքս լուսամուտէն թափ անցնելով նորա արծաթափայլ դէմքին բևեռուեցաւ։ Իմ հարցիս պատասխանը ես լուսնից էի սպասում։ Գրգռուած երևակայութեանս առաջ տեսայ մի կայծ, որ լուսնից թռաւ և հանդարտ լողալով ու հեռզհեռէ մեծանալով՝ դէպի ինձ եկաւ։ Ապշած աչքերուս դիմացը կանգ առաւ լուսնի շողերով մի լուսաթաթախ մարդ և այս սփոփանքը կարդաց. «մարդու որդի, «քաջալերեաց, ես եմ». քո բողոքդ արդար է, սակայն չէ յուսահատական. լսիր իմ պատգամը և հաղորդիր զայն քո ժողովրդին. եթէ այդ էլ նոցա վերայ չազդէ և նորա անուշադիր թողնեն խօսքերդ, այն ժամանակ ես քեզ կ'հանեմ այս անապատից, ուր քրտունքդ անպտուղ սերմերի աւազի մէջն է, ծծուում և կ'տանեմ այնտեղ, ուր ծաղիկ է, ծաղկում։

Դէհ, լսիր ինձ։

Թոթովանքներիդ մէջ դու ողբացել ես մինչև այսօր Հայ ժողովրդի կենաց ծառի չորցած ճիւղերը, որոնք են՝ տգէտ քահանայութիւն, անխոհեմ երիտասարդութիւն, անկիրթ մանկութիւն։ Բայց մոռացել ես, որ այդ ճիւղերին սնունդ տուող, խոր ուսերի վերայ

պաՀպանող արմատում որդ է, մտած և արմատի Հիւանդութիւնիցն է, որ ճիւղերը յաւագար դարձան ու գօսացան։ Հայկական կեանքի այդ արմատը Հայ կանայքն են։

Կ՚յիշես թէ, հզօր Եղիպտոսի երկաթի ձեռքերից ազատուեցաւ Իսրայէլի մի բուռն ժողովուրդ։ Եգիպտոսի օրիորդները բարոյապէս հիւանդ ու հիւծուած մայրեր եղան և վատարի և հիւանդ զաւակներ ծնան. իսկ Իսրայէլի առողջ և կուսական օրիորդաց գրկէն տառապանքների մէջն անգամ հսկաներ ծնան, պարագլուխ ունենալով ահեղ Մովսէս մարգարէին։ Եգիպտական հիւանդոտ կանանց գաճաճ որդոցը դորները, մարախը, մուկը կերաւ։ Փառաւոր Եգիպտոսին անբարոյականութեան խաւարը տիրեց այն ժամանակ, երբ Իսրայէլի բարոյական կանանց հսկայ զաւակները արեան ծովերով անցան և լուսաւոր ամպը առաջնորդում էր նոցա։ Հռաքելի տարադիր ու պանդուխտ Յովսէփ որդին Եգիպտոսի անբարոյ կնոջ ձեռքերում ոչ իւր մաքուր կեանքի ծաղիկը, այլ միայն իւր պատառոտուն հանդերձները թողաւ. ուստի և Պետափրէսի կահը առաքինի Հռաքելի զաւակը նստաւ։ Բայց եկաւ մի օր էլ, որ Իսրայէլի օրիորդներու վերայ էլ անբարոյականութեան կարկուտը թափուեցաւ, մանրացաւ Իսրայէլ,

մաշուեցաւ սերունդը։ Իսրայէլի օրիորդները միայն նման մանր, նապաստակի նման վախկոտներ ծնան։ Կուսական այդ կարկտահար անտառի մէջ միայն մի բարձրահասակ կուսական ծառ մնաց, մի արհամարհուած Մարիամ, որ իւր քոյրերի ախտաւորութիւնից հեռու մնաց. ուստի և Աստուած իւր Փրկիչ Որդուն կոյս Մարիամի գիրկը դրաւ, օրիորդական կուսութիւնը սրբագործելով և Մարիամը իւր տուած Աստուածորդու պատճառով ինքն ևս աստուածանման դարձաւ։

Անթիւ են պատմութեան մէջ օրինակներ, ուր օրիորդական կուսութիւնը գարուն է դարձել ազգերի, արատաւոր օրիորդութիւնը՝ յաւիտենական ձմեռ։ Եւ այս յաւիտենական օրէնք է, որ թոթովախօս, կոխկռտուած ճանապարհների վերայ, ուր ամէն անցորդի ոտքն է ընկնում, բոյս և ծաղիկ չեն աճի, իսկ լեռանց բարձունքներում, ուր առաքինութեան սրաթև պահապան արծիւներն են հսկում, այնտեղ մըշտադալար գարուն է, այնտեղ դրախտ երկրաւոր։

Դարձուր հայեացքդ Հայոց աշխարհի վերայ։ Տես, Հայոց կուսական դաշտերն առաջ որքան առատ ցորեն էին տալիս ատոք հասկերով, իսկ այժմ ամուլ անապատներ դարձել և տեղ տեղ միայն ապականն հասկեր։ Առաջ հաւատով դո-

բեղ, հոգով արի, մարմնով առողջ հերոսները փառք բերին իրենց նման մայրերուն, իսկ այժմ հուսատով տկար, հոգով փտտարի, մարմնով ախտաւոր պատանիները իրենց ժառանգութիւնը մայրերից ստացան և ամօթ բերին նոցա անուան ու յիշատակին։

Եւ ինչու, կ՚հարցնես, ահա ինչու.

Առաջ Հայ աղջիկը մայրենի յարկի տակ էր մեծանում. այդ սրբազան տան մէջ, որ միևնոյն ժամանակ և տաճար էր նորա համար. նա աղօթում էր, նա կրթւում էր աշխատանքի մէջ, նա մայրութեան համար էր պատրաստւում։ Ամօթխածութեան կարմիր քօղը նորա երեսից ոչ ընկնում և ոչ պատռւում էր. նա նման էր անմատչելի լեռների լանջին բուսած շուշանին, ուր երկրատարգի յանդուգն ձեռք չի հասնում։ Հայ աղջիկը օժիտով չէր պնոյ մարդու, նորա օժիտը իւր առաքինութիւններն էին, որք առաջ ծունկ էին իջնում երիտասարդները և շատ անգամ նորա ծնողներին իրենց գանձերն էին առաջարկում, որ առնեն այն մարգարիտը։ Եւ օրիորդների առաքինական սրբման պատճառով ոչ մէկը տանը չէր մնայ, թէկուզ մարմնական պակասութիւն ունենար։

Մի իմաստուն թագաւոր այսպէս է ասում.

երբ որ կանեայք Աստուծուց վախենալը և մարդկանցից ամաչելումն կողմը դնեն, կամ իրենց աշխարհի վերջը կ'ըերինկամ աշխարհն՝ իրենց։»։ Այժմ այդ ճշմարտութիւնը իրականութեան մէջ տես։ Դարերուց ի վեր մերթ արևի ճառագայթարձակ թեւերով կ'շրջեմ ու կ'դիտեմ աշխարհ, մերթ լուսնի շողերով կ'լողամ։ Տեսնում եմ այժմ Հայ օրիորդներից շատերին, որոց երեսին ամօթխածութեան քօղը չկայ. Ծնողական յարկը նոցա համար այլ ևս չէ սաճար և աշխատելու տեղ. տեսնում եմ կուսական համեստութիւնը թորշոմած։ Եւ գիտես ինչ է ասում նոյն իմաստուն թագաւորը կնոջ անհամեստութեան համար. «Կանանց բոլոր միւս պակասութիւնները կանաչ ճիւղի կ'նմանին որ կարող ես շտկել, բայց իրենց անհամեստութիւնը չոր փայտի կ'նմանի, որ չի շտկւի, այլ կ'կոտրւի»։ Առաջ Հայ աղջկայ սրբութեան սեղանը տանն էր, խոստովանահայրը՝ մայր, այժմ լեռ ու դաշտ, խոստովանամայրը մանկաբ.... ո՜հ, շատ բան եմ տեսնում, տեսնում եմ ու մըրկըտում։ Այժմ եթէ անցած գնացած ժամանակների Հայ օրիորդները յաքութին ունեն, գերեզմաններից վեր կենան, իրենց արատաւոր քոյրերին տեսնելով, վերստին դէպի գերեզման կ'փախչեն ամօթից, լաւ համարելով սև հող-

րումը պառկել քան այդպիսի քողերու մէջ ապրել *)։

Եւ այս կեանքի դառնութեան մրուրն ո՞վ է քամում։

Աստուծոյ արդարութեան օրէնքով նախ իրենք այդ օրիորդները. աղքատ դեղջուկ աղջիկները շուտով մայրութեան կ՚հրաժարուին իրենց առաքինութեան շնորհիւ, մինչ դեռ առաքինութիւնից թափուրներուն օժիտ պէտք է որ ճանապարհ դնել։ Ապա իրենք ծնողները, որոնք իրենց աղջիկների առաջարկելիս նոցա օժիտն առաջարկելն կամ ազնուականութիւն, վասն զի առաքինութիւն չմնաց, որ առաջարկէին։ Երիտասարդների մէջ վստահութիւնը մեռաւ. ո՞վ կ՚համարձակուի կանացի բարոյական վսեմ զարդերից թափուր օրիորդի ձեռք մեկնել։

Արդա՞ր դատաստան։ Բայց ափսո՜ս, անտառն ընկած կրակը ցամաք, չոր խոլիների

*) Այս խօսքը թելադրել են նուաստ քարոզչին մի քանի օրիորդներ իրենց ակնյայտնի քանիմ (թէ՞ անվերջ) վարմունքներով. արտասանուած է սրտի ցաւով այլ ոչ ատելութեամբ ի գթութիւն Շուշուայ բազմաթիւ պատուական Հայ օրիորդներու, որոնք կարող էին միամտաբար խաբուել մոլորուածներից։ Ակնարկած մի քանիսը խիստ վրդովուեցան, ուստի և իրենց օգտի առաջ կուրացան։ Ցաւում եմ, բայց պարտքս սիրով եմ կատարում։

հետ և կանաչ դալարին է այրում. շատ համեստ պատուական օրիորդներ իրենց անարժան քոյրերու հետ պատժուած մնացին։ Իսկ ամենախոշոր պատիժը մի թշուառ ժողովուրդ է կրում։

Համի իմաստուն թագաւորը մի ժամանակ բացականչում էր. «Ո՛վ Համ, չեմ ուզում ոչ աւերուած պալատներդ, ոչ փլած պարիսպներդ, ոչ այրուած անտառներդ. ոչ պակսած բնակիչներդ. ոչ, դոցա վերայ չեմ լալիս։

Ուզում եմ ու լալիս տեսնելով քեզ, որ զուրկ ես քո հայրերի առաքինութիւնից ու կրթութիւնից։ Կորաւ վերջացաւ մեր հայրենիք, երբ տղայ ու աղջիկ զաւակներու կրթութիւնը պակսեց. տղայքը լրբացան, աղջիկներն ամօթխածութիւնը մի կողմ դրին, մայրերն անպարկեշտ դարձան»։

Նոյն ողբը քո հայրենիքիդ կարդա՛, ով թոթովախօս։ Անիծուի փողը, անիծուի հարըստութիւնը, անիծուի դրամն անարգ մարդկանց ձեռքում, անիծուի մոլար և անմարս ուսումն, որ մտաւ մեր մէջ և մեր և Հայ աղջկանց առաքինութիւնները խլեց մեր ձեռքէն։

Ասա՛, ով թոթովախօս, ասա Հայ աղջիկներուն ու մի վախենար, գլի հալածանքի վերարկուն դորա համար հագար. ասա՛, որ առաքինութիւն սիրեն, ասա՛ որ ճշմարիտ պահք

պահեն մինչև հանգի ս. պատկին, ասա որ չ'կորցնեն քո տառապեալ ժողովուրդ։ Կ'գայ օր երբ վրաց ուրացող 'նախատինքների փոխէք յիշատակներ վրայէն իրենց մատեաններից կ՚ժողովեն. սուտ, պարտքի կատարիր»։ Ես խոստացայ։

Լռեց ոգին. իւր վերադարձի փեշով սրբեց իմ արցունք, հեռացաւ լռելով, հետզհետէ փոքրանալով նոյն կայծը դարձաւ և լուսնին միացաւ *)։

---

*) Ծանօթ. Խօսուած է 1902 թ. մարտի 17-ին Ջուղայ Ղազանչեցոց եկեղեցում։

# ՎՐԻՊԱԿՆԵՐ

| Երես. | Սխալ. | Ուղիղ. |
|---|---|---|
| 9 | տմբոխ | ամբոխ. |
| 23 | դուստ | դուստր. |
| 32 | այո | այս. |
| 46 | եղբօրր | եղբօրը։ |
| 48 | կանգում | կանգնում |
| 61 | Նոյա կուրծք | . . . . . |
| 66 | անշնհորք | անշնորհք |
| 67 | մօռացնել | մոռացնել. |
| 70 | արձականք | արձագանգ. |
| 74 | իւրաքանչիւր | Իւրաքանչիւր. |
| 78 | մեղա՜ | մեղա՜յ |
| 81 | մեղա՜ | մեղա՜յ |
| 82 | յուղուի | յուզուի, |
| 84 | ամեխօն | ամբիոն, |
| 85 | անուզզա | անուղղայ |
| 89 | վա | վա՜յ |
| 92 | յասօր | այսօր |
| 93 | մարսկանց | մարդկանց |
| 105 | խավարի | խաւարի |
| 111 | աւաղով | աւաշով |
| 112 | ժամանակի | ժամանակի |
| 120 | ոոսկերք | ոսկերք |
| 135 | արծէժափայլ | արծաթափայլ |
| 142 | փղերը | փշերը. |